


ԱԶԱՏ ՇԱՀԻՆՅԱՆ

Տղան բարձրացավ աթոռին և իր գրպանի ամբողջ պարունակությունը շուռ տվեց սեղանի վրա։ Ռետինե պտուտակով ատամնավոր կոճ, ինչ-որ տեղից գտած Բուրատինոյի երկարաքիթ մի գլուխ, պղնձյա մի քանի մանր դրամ, թիթեղյա ծռմռված սուլիչ, լուցկու դատարկ տուփ և ուրիշ այլ իրեր, որոնցով լիքն են լինում փոքրիկ տղաների գրպանները։ Նա այդ բոլորից առանձնացրեց պղնձյա դրամներն ու սկսեց հաշվել.

— Մի կոպեկ... էլի մի կոպեկ, երկու կոպեկ... Հետո, էլի մի կոպեկ, կանի երեք կոպեկ։

Տղան թեպետ վեց տարի էր ընդամենը, ինչ գոյություն ուներ աշխարհում, բայց արդեն ոչ միայն կարողանում էր հաշվել մինչև երեսունը, այլև գիտեր, որ երեք կոպեկով կարելի է մի ամբողջ բաժակ գազով ջուր խմել՝ նարնջի կամ բալի հյութով քաղցրացրած։ Նա հասկանում էր, նույնիսկ, որ երեք կոպեկով գնված մի բաժակ քաղցր ջուրը կարելի է բաժանել երեք մասի և երեքով միասին վայելել այդ հրաշալի բավականությունը։

Տղան մանր դրամները բռի մեջ սեղմած՝ ցած իջավ աթոռից, արագ ոտքերին գցեց հոր կրկնակոշիկները, բաց արեց դուռը, և շքամուտքը լցվեց նրա ուրախ ոտնաձայնով։

Դրսում ձյուն էր՝ սպիտակ, մաքուր ձյուն։ Արջաքոթոթների պես իրար գրկած, թավալվում էին Մարկոսն ու Շեկոն։

— Էհե՜յ, Մարկոս... էհե՜յ, տղանե՜ր,— հեռվից ձայն տվեց Փոքրիկը և մեծ-մեծ կրկնակոշիկները ձյան վրա քստքստացնելով, վազեց առաջ։

— Տղանե՜ր, փո՜ղ...

Մարկոսն ու Շեկոն միանգամից զգաստացան։

— Տեսե՛ք, մի կոպեկ... էլի մի կոպեկ... Հետո, էլի մի կոպեկ։

— Երեք կոպե՞կ, ի՛հ,— ձեռքը անտարբերությամբ թափ տվեց Մարկոսը, որը երկու թզաչափ բարձր էր Փոքրիկից և չորս տարի նրանից շուտ էր հայտնվել աշխարհի վրա։

— Սրանով մի բաժակ գազով ջուր կառնենք Մարկո՛ս,— ասաց Փոքրիկը,— բալի հյութով։ Դրանք, երեքիս էլ կհասնի։

— Ձմեռ է,— ասաց Մարկոսը,— հիմա ջրեր չկան։

— Բաղնիքի սրահում կա,— ասաց Շեկոն և ընկերոջը գլխով գնալու նշան արեց։

Տղաները Փոքրիկին. իրենց մեջտեղն առած, ձեռքները նրա ուսերին դրած, անցան բակով։ Փոքրիկը շուրջն էր նայում։ Նա ուզում էր բաղնիքը, որի սրահում գազով ջուր են վաճառում, ոչ թե իրենց փողոցի անկյունում լիներ, այլ շատ հեռու, որպեսզի իր ուսերին երկար ժամանակ զգար տղաների ձեռքերի ջերմությունը։

Նրանք մտան բաղնիքի մեծ ու լուսավոր սրահը։

— Վերցրո՛ւ երեք կոպեկը, Մարկո՛ս,— ասաց Փոքրիկը մանր դրամները պարզելով նրան։

— Կարմի՞ր գույնից ես ուզում, թե՞ դեղինից,— մեջ ընկավ Շեկոն։

— Երկուսից էլ ուզում եմ,— ասաց Փոքրիկը՝ աչքը չհեռացնելով գունավոր հյութով լցված երկար սրվակներից։

— Երեք կոպեկով երկուսից չեն տա,— ասաց Մարկոսն ու մանր դրամները մեկնեց վաճառողին։— Մի բաժակ գազով ջուր՝ բալի հյութով։

Փոքրիկը բարձրացավ ոտքի թաթերին՝ տեսնելու, թե ինչպես է գազով ջուրը խշշոցով լցվում բաժակի մեջ։

Մարկոսը քաղցր ջրով լի բաժակը մոտեցրեց շրթունքներին։ Երևի նա ամբողջովին դատարկեր այն, եթե Շեկոն կեսից չխլեր բաժակը Մարկոսի ձեռքից։

— Բա ի՞նձ...

Հիմա էլ Շեկոն սկսեց փնչալով ու ֆսֆսալով կուլ տալ բաժակում մնացած քաղցրջուրը։ Երբ բաժակը համարյա դատարկվեց, նոր միայն այն հասավ Փոքրիկին։ Վերջինս թրջեց շրթունքները նրա մեջ մնացած մի քանի քաղցր կաթիլներով ու մեծ բավականությամբ ժպտաց։

Նրանք դուրս եկան բաղնիքի սրահից։

— Դու, ավելի լավ է, տո՛ւն գնա,— ասաց Մարկոսը։

ՀՈՒՆԻՍ
№ 6 1964 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

*— Բա դո՞ւք։*

*— Ես տեղ պիտի գնամ։*

*— Ես էլ, — ավելացրեց Շեկոն։*

*— Լավ, — ընկճված ասաց Փոքրիկը և մենակ վերադարձավ բակ։*

*Շքամուտքը լցվեց նրա տխուր ոտնաձայնով։*

2

*Առավոտյան, երբ տղան արթնացավ, բարձի տակ գտավ նկարազարդ մի փոքրիկ տուփ։ Հայրիկն էր դրել... Տուփի վրա «Պապ ու շաղգամի» պես իրար հետևից շարված ինչ-որ երկարամորուք, կարմրաքիթ ու ժպտացող ծերուկներ էին նկարված։ Տղան անհամբերությամբ բաց արեց կափարիչը և, ա՛յ քեզ բան...*

*— Մեկ, երկու, երեք, չորս...*

*Տուփը լցված էր յոթ շոկոլադե ծերուկներով։ Տղան չհամբերեց, վերցրեց նրանցից ամենապստլիկին ու կերավ։ Նա շատ լավ գիտեր, որ եթե այդ ծերուկները շոկոլադից են, ուրեմն ուտելու համար են։*

*— Մեկն էլ ուտեմ, էլ չեմ ուտի, — ասաց տղան, և երկրորդ ծերուկն էլ հրաժեշտ տվեց ընկերներին։*

*— Համե՞ղ էր, — հարցրեց մայրը։*

*— Ըհը՛, — գլխով արեց Փոքրիկն ու, նկարազարդ տուփը ցույց տալով, ուրախ բացականչեց. — տե՛ս, մա՛մ, ի՜նչ սիրուն նկար է...*

*Մայրը պատմեց նրան յոթ թզուկների մասին։ Եվ նա լսեց հրաշալի մի հեքիաթ, գույն և ամենալավագույնը իր լսածներից։ Փոքրիկն իմացավ, որ նրանք՝ այդ պստլիկ, բարի կախարդները շատ են սիրում երեխաներին և ամեն բանում օգնության են հասնում նրանց։*

*— Իսկ որտե՞ղ են ապրում նրանք, մա՛մ։*

*— Հեքիաթներում, տղա՛ս, միայն հեքիաթներում։*

*— Բա ինչո՞ւ մենակ հեքիաթներում։ Ես չեմ ուզում, — թնկթնկաց Փոքրիկը, — չեմ ուզում հեքիաթներում ապրեն։ Ես ուզում եմ մեր տանը ապրեն։*

*Մայրը ծիծաղեց. բայց արի ու տես, որ այդ օրվանից սկսած՝ թզուկները ապրեցին Փոքրիկենց տանը, տղայի բարձի տակ՝ նրա մտքում և հոգում։ Ամեն անգամ քնելիս, թե արթնանալիս նա*

հանում էր նվիրական տուփը, նայում էր երկար ու հետո նորից խնամքով տեղավորում բարձի տակ։

Բայց ահա մի օր էլ...

3

Դրսում էլի ձյուն էր։ Դրսում դահուկներով սահում էին Մարկոսն ու Շեկոն։ Փոքրիկը շտապով ցած իջավ պատուհանի գոգից, բարձի տակից հանեց թզուկներով նկարազարդված տուփը, և շքամուտքի աստիճանները զրնգացին նրա ոտքերի տակ։

— Էհե՜յ, Մարկո՜ս, էհե՜յ, Շեկո՜, — ձայն տվեց նա, — տեսե՞ք...

— Ի՞նչ է, — հարցրեց Շեկոն, — խաղալիքի տո՞ւփ է, հա՞։

— Չէ՛, խաղալիքի չի՛, — ասաց Փոքրիկը, — սրա մեջ յոթ հատ մորուքով ծերուկ կար, հինգը կերա, իսկ երկուսը... — Նա չկարողացավ շարունակել։ Տղաները ծիծաղեցին։ Փոքրիկը զարմացած նայեց նրանց ու, չգիտես ինչու, ինքն էլ սկսեց քրքջալ։

— Ո՞նց թե կերար, — հարցրեց Մարկոսը։

— Իսկականից հո չէի՞ն, շոկոլադից էին։ Ա՛յ, տե՛ս... — Նա շտապով բաց արեց տուփը. — Վերցրո՛ւ, Մարկո՛ս... վերցրո՛ւ, Շեկո՛, շատ համեղ է։

Երկու նախշավոր շոկոլադները իսկույն հալվեցին տղաների բերաններում։

— Դու լավ տղա ես, գիտե՞ս, — ասաց Մարկոսը՝ ձեռքը դնելով նրա ուսին։

— Եթե լինեի, էլի՛ կտայի, — ուրախ ասաց Փոքրիկը։

— Ես շոկոլադ այնքան էլ չեմ սիրում, — մեջ ընկավ Շեկոն։ — Ա՛յ, եթե տուփը տայիր ինձ...

— Տուփը ինձ է տալու, — շտապով վրա տվեց Մարկոսը, վերցնելով այն տղայի ձեռքից։

— Չէ՛, Մարկո՛ս, — վախեցավ Փոքրիկը, — ա՛յ, ուզում ես՝ սուլի՛չս վերցրու։ Ուզում ես... ուզում ես՝ գնամ հոլս բերեմ, մենակ թե տուփը տուր, լա՞վ։

— Ուրեմն չե՞ս տալիս։

— Ինչ ուզում ես՝ կտամ, մենակ թե...

— Դե որ այդպես է, ո՛չ ինձ, ո՛չ էլ քեզ, ըհը՛, — ասաց Մարկոսը և ձևացրեց, թե շպրտեց նկուղը։

... Կիսախավար նկուղում ցուրտ էր ու խոնավ։ Կիսախավար նկուղում իրար վրա կիտված փայտերի, ածուխների, թղթերի, դատարկ ու ջարդված տակառների արանքներում Փոքրիկը փնտրում էր իր գեղեցիկ տուփը։ Փնտրում էր ու լալիս... լալիս էր ու փնտրում։ Ասես, կորցրել էր մի ամբողջ աշխարհ և դրա համար էլ լալիս էր։ Երկար փնտրեց նա, բայց յոթ թզուկների հրաշալի տուփը չկար ու չկար։ Նա հոգնած ու հուսահատ նստեց նկուղի մի անկյունում և սնքրտալով սկսեց մտածել, թե ուրիշ որտե՞ղ կարող էր ընկած լինել այն։ Մտածեց, մտածեց և հանկարծ... Նկուղի խավար անկյունում, «Պապ ու շաղգամի» նման իրար հետևից շարվեցին մորուքավոր պստլիկ ծերուկները, ճկույթաչափ յոթ թզուկները։

— Դու մե՞զ էիր փնտրում, — լսվեց նրանցից մեկի ձայնը։ — Ահա և մենք...

— Ինչ լավ է՝ գտա ձեզ։ Ես գիտեմ, դուք շատ բարի եք, — ժպտաց Փոքրիկը։

— Այո՛, թեպետ դու ինձ կերար, բայց ես էլի եկել եմ օգնելու քեզ, — ծվծվաց ամենապստլիկ թզուկը, որ կանգնել էր ամենքից վերջում։

— Մի այստե՛ղ նայեք, — խոսեց կապուտաչ թզուկը, որը ուշադիր ինչ-որ բան էր զննում նկուղի հատակին։ — Այս ի՞նչ փայլուն բաներ են թափված մեր ոտքերի մոտ։

— Տղայի արցունքներն են, — նկատեց Կանաչամորուքը։

— Զգո՛ւյշ, չտրորե՛ք Փոքրիկի արցունքները, — տագնապով ծվծվաց ամենապստլիկ թզուկը և արտասուքի կաթիլները գետնից հավաքելով, ավելացրեց. — Մենք սրանցից սքանչելի ուլունքներ կպատրաստենք։

— Լսե՛ք, բարեկամներս, — խոսեց Բարձրահասակը, — պետք է մի լավ պատժել այդ չար և անպիտան տղաներին։

— Սպասե՛ք, մի՛ պատժեք, — ոտքի թռավ Փոքրիկը՝ փակելով նրանց ճանապարհը։ — Չէ՞ որ դուք սիրում եք երեխաներին։

— Մենք սիրում ենք միայն հասկացող և բարի երեխաներին, — ասաց Դեղնամորուքը։

— Դե ասա՛, փոքրի՛կ, — խոսեց առաջին թզուկը, — եթե չես ուզում պատժենք այդ անպիտան տղաներին, ապա ի՞նչ կուզեիր, որ մենք անեինք քեզ համար։

— Ես քույրիկ չունեմ, եղբայր չունեմ։ Ես կուզեի, որ Մարկոսն ու Շեկոն իմ եղբայրները լինեին։ Նրանք այնպես լավ-լավ խաղեր են խաղում։



— Հասկանալի է, — տղայի խոսքերից ազդված՝ ասաց Կարմրաքթիկը և թաշկինակը հուզված սեղմեց աչքերին։

— Մենք պետք է այնպես անենք, — ասաց առաջին Թզուկը, — որ այդ երկու տղաները հասկանան, թե ինչպես պետք է վարվել իրենցից փոքրերի հետ։ Դիլիբոբի, բոբի-բո՛բ, իմ հետևից…

Եվ Թզուկները արագ դուրս եկան նկուղի պատուհանից։ Դրսից ինչ-որ հեռավոր ձայներ հասան Փոքրիկի ականջին։ Մի քանի րոպե անց, նկուղի մրոտ պատուհանում հայտնվեց ամենապստլիկ Թզուկի ժպտացող դեմքը։

— Դո՛ւրս արի, բոլորը քեզ են սպասում…

Փոքրիկը դուրս եկավ նկուղից։ Դրսում թեպետ արև էր, տաք ու հաճելի, բայց ձյուն էր գալիս. սպիտա՜կ, սպիտա՜կ… Այ քեզ զարմանալի բա՜ն, բակը լցվել էր երեխաներով. նրանք ուրախ վազում, շրջապատում են Փոքրիկին և ամեն մեկը, որը՝ չմուշկներ, որը՝ դահուկներ, որը՝ սահնակ պարզելով, բացականչում են.

— Վերցրո՛ւ, սահի՛ր…

Ահա Մարկոսն ու Շեկոն կռանում, նրա ոտքերին են ամրացնում դահուկները, և նա սահում է, Սահում է քամու նման, սարերի ձորերի վրայով, Իսկ Մարկոսն ու Շեկոն շնչակտուր վազում են նրա կողքերից, շարունակ բղավելով.

— Ամո՛ւր պահիր քեզ… Մի՛ վախենա, մենք քեզ հետ ենք…

5

Դահուկներն ուսերին դրած՝ բակ մտան Մարկոսն ու Շեկոն։ Բակում իրարանցում էր։ Փնտրում էին Փոքրիկին։

Մարկոսը նայեց Շեկոյին ու չգիտես ինչու, նրա ձեռքը ինքնաբերաբար գրպանը գնաց։ Մատների տակ զգալով սովարաթղթե տուփը, նա արագ շուռ եկավ և դեպի նկուղը վազեց։ Շեկոն էլ՝ նրա հետևից…

Կիսախավար նկուղում, ջարդված տակառների մոտ կուչ եկած, քնել էր Փոքրիկը։ Ալյուրի պես փայլուն արտասուքի երկու կաթիլ ակոսել էին նրա ժպտացող դեմքը։

— Շնորհակալությո՛ւն, բարի՛ Թզուկներ, — քնի մեջ շշնջաց նա։

Մարկոսը ցնցվեց. տարօրինակ մի շոգ տվեց վրան։ Նա իսկույն գրպանից դուրս քաշեց նկարազարդ տուփը և այն զգույշ դրեց տղայի ձեռքերի մեջ։ Փոքրիկը աչքերը բացեց։

— Մարկո՛ս, — ուրախ ճչաց նա և ամուր փարվեց տղային։

— Մարդ նկուղում կքնի՞, բա որ հիվանդանաս, — ասաց Մարկոսը և, գրկելով նրան, բարձրացրեց փոշոտ հատակից։

Տղան ժպտաց և ավելի ամուր սեղմվելով Մարկոսին, չգիտես ինչու, ետ նայեց։ Փոքրիկին թվաց, թե այնտեղ, նկուղի խավար մի անկյունից ժըպտում էին իր բարի Թզուկները։

# Մի կաթիլից մի աղբյուր

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ժայռի տակ՝ մամուռ ու կանաչ քարեր,
Քարերից կաթ-կաթ ջրեր են ծորում,
Սակայն չփորձես վրայով քայլել,
Ոտքդ դրեցիր՝ ծայն կտաս ծորում։

Ժայռը ճաքճքված շուրթերն է կախել,
Ծարավ ճայում է խոնավ ոտքերին.
Ցածում շարվել են ծուփ-ծուփ ծաղիկներ՝
Մարգարտահատիկ ցողը թերթերին։

Եվ մի օր այն չոր ժայռի մոտ եկան
Պիոներները լեռնային գյուղի,
Ժայռի ոտքի տակ փորեցին այնքան,
Մինչև որ բացվեց ակունքն աղբյուրի։

Կաթիլներն ասես իրար միացան
Եվ աղբյուր դարձան վարար ու վճիտ,
Երբ ջրերը ջինջ քարեքար անցան,
Կարկաչը հասավ ժայռի ականջին…

Եվ այդ օրվանից էլ ժայռը երբեք
Մենակ չեր արդեն, ականջը երգին,
Ընկերացել է նա աղբյուրի հետ,
Ասես թե պապն է գտել թոռնիկին։

Հավքեր են գալիս, բույն հյուսում մոտիկ,
Եղնիկներն՝ իջնում աղբյուրի վրա,
Կապում է ժայռը մի կանաչ գոտի,
Ջմրուխտ են հագել լանջերը նրա։

Ու ժայռի կրծքին տառեր են փորված՝
Ծննդյան թիվը նորեկ աղբյուրի,
Եվ մի իմաստուն խորհուրդ է գրված.
«Խմի՛ր աղբյուրից, բայց մի՛ պղտորիր»…




ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Տղան նստել էր ցանկապատին և ոտքերն էր թափահարում: Երկար, փայտե ցանկապատը նրա համար էր, որ չտրորեն բակում ցանված ծաղիկները: Նույնիսկ գրված էր. «Չտրորել»: Ցանկապատին չնստելու մասին գրված չէր: Բայց եթե լիներ, դարձյալ կնստեին, ինչպես հիմա էլ մտնում էին ծաղիկների մեջ: Տղան փոքր էր և կարդալ չգիտեր: Բացի դրանից, նա չէր կարող իրեն զրկել ցանկապատին նստելու և ոտքերը թափահարելու գերագույն հաճույքից:

Արդեն մթնել էր, և տղան մենակ էր ցանկապատի վրա: Ամբողջ ցանկապատը նրանն էր պատկանում: Նստած էր մի ժամի չափ, և ոտքերը հոգնել էին թափահարվելուց: Եթե լույս լիներ՝ կերևար, որ թաց ցանկապատից ներկը քսվել է կարճ, բաց գույնի շալվարին:

Տղան թռավ ցանկապատից: Նրա ոտքերը ուրախ չփչփացին անձրևաջրի մեջ:

Երրորդ հարկում դուռը բացեց Ռուբիկի մայրը: Տղան լուռ նայեց նրան:

— Ռուբիկի՞ն ես ուզում, — հարցրեց կինը:

Տղան գլխով արեց:

— Ռուբիկը տանը չէ:

Տղան կողքանց մտավ ներս: Կինը դուռը ծածկեց և հետևեց նրան: Մեծ, լուսավոր սենյակում տղան կանգ առավ:

— Ես Ռուբիկին եմ ուզում — ասաց նա:

— Ռուբիկը տանը չէ, — կինը ժպտաց, — կրկես է գնացել հայրիկի հետ:

Լույսից տղայի աչքերը արտասովոր մեծ էին երևում, կլոր:

— Մեր կատուն ձագ է բերել, — ասաց նա:

Կինը չգիտեր ինչ պատասխաներ:

— Մեր կատուն ձագ է բերել, — կրկնեց տղան:

Կինը պահարանից կոնֆետ հանեց:

— Վերցրո՛ւ, — ժպտաց նա:

Տղան ձեռքերը թաքցրեց մեջքի հետևը: Կինը նեղվեց տղայի անմեղ, բայց համառ ու պահանջկոտ հայացքից.

— Մենք պետք է գնանք ձագերին տեսնելու:

Այն միտքը, որ ինքը չի կարող բավարարել տղայի ցանկությունը, կնոջ սիրտը լցրեց մի զգացումով, որ մայրն ունենում է որդու հանդեպ:

Տղան գլուխը երկարեց դեպի մյուս սենյակը:

— Ռուբիկը կրկես է գնացել, — կինը շոյեց տղայի մազերը, — առավոտյան կգնաք:

Կինը տղային տարավ դեպի դուռը և ճանապարհ դրեց: Վերադառնալով սենյակ, նա տեսավ տղայի փոքրիկ ոտքերի թաց հետքերը: Ձեռքի կոնֆետները, որ շատ չնչին էին, համեմատած տղայի ցանկության հետ, նա դրեց սեղանին և գնաց խոհանոց: Հետո, երբ կռացավ այդ փոքրիկ, թաց ոտնահետքերը սրբելու, չգիտես ինչու, նորից ժպտաց:

Տղան նորից բարձրացավ ցանկապատի վրա: Այստեղից երևում էր ամբողջ աշխարհը. բակը՝ ծաղիկներով, որ չնայած ցուցանակին, կարելի է տրորել, խաղերի հրապարակը, որտեղ խաղալը բոլորովին անհետաքրքիր է: Բակի անկյունում գերանների կույտ կա: Նրանց վրայից կարելի է ցած

թռչել և նույնիսկ քերծել ծունկը։ Բակի երեք կողմերում շենքեր են։ Այդ շենքերից մեկի հին-գերորդ հարկում այսօր ծնվել են կատվի ձագերը։ Չորրորդ կողմում փողոց է։ Այնտեղով անցնում են մեքենաներ և մարդիկ։ Փողոց դուրս գալն արգելված է։ Բայց այնտեղ շատ հետաքրքիր է և երբեմն կարելի է գնալ։

Տղան չէր հասկանում, թե ինչու է Ռուբիկը կրկես գնացել։ Իրենք պետք է գնային ձագերին տեսնելու։ Տղային թվաց, որ դա սխալ է և Ռու-բիկը չէր կարող կրկես գնալ։

Տղան ավելի հարմար տեղավորվեց ցանկապա-տի վրա և թափահարեց ոտքերը։ Մեկը մոտեցավ ցանկապատին։

— Ի՞նչ ես անում այստեղ,— հարցրեց մարդը։

Ոտքերը դադարեցին շարժվելուց։

— Ինչո՞ւ ես մենակ նստել։

— Ռուբիկին եմ սպասում,— ասաց տղան։

— Նա ո՞րտեղ է։

— Կրկես է գնացել։

— Եվ դու պետք է սպասե՞ս նրան։

— Մեր կատուն ձագեր է բերել,— ասաց տղան,— չորս հատ։

Մարդը նրան իջեցրեց ցանկապատից։

— Ասում ես՝ չորս հատ, դա լավ է։ Իսկ դու բո-լորովին ցեխոտվել ես, ավելի լավ է՝ տուն գնա։

Տղան նորից բարձրացավ ցանկապատի վրա։

— Նրանք ոչինչ չեն տեսնում,— հայտնեց նա։

— Զարմանալի է, իսկ ինչո՞ւ։

Տղան գտավ պատասխանը.

— Նրանց աչքերը փակ են։

Տղամարդը լուռ էր։ Նա ասելու բան էր փնտ-րում։

— Մենք նրանց սեղանի տակ ենք պահում։

— Սեղանի՞, իսկ ինչու՞ սեղանի։

Տղան զարմացած նայեց իր առաջ կանգնած մարդուն, որ աշխարհում ապրում էր իրենից քառասուն տարի ավել։

— Սեղանը խոհանոցում է։ Նրանք շատ փոքրիկ են։

— Հասկանալի է, շատ փոքրիկ են։ Իսկ ձեր տունը որտե՞ղ է։

Տղան ձեռքով ցույց տվեց։

— Ուրեմն չե՞ս ուզում տուն գնալ։

Տղան գլուխը շարժեց։

— Տո՛ւն գնա։

— Ես Ռուբիկին եմ սպասում։

— Իզուր մի՛ սպասիր, նա ուշ կգա։

Տղան իջավ ու քայլեց ցանկապատի երկայն-քով։ Երբ մարդը թեքվեց ու մտավ շքամուտքե-րից մեկը, տղան նորից բարձրացավ ցանկապատի վրա։

Արդեն բոլորովին ուշ էր, և տղան մենակ էր ցանկապատի վրա։ Ամբողջ ցանկապատը նրան էր պատկանում։ Կարող էր նստել, որտեղ ցանկանար։ Բայց դա չէր ուրախացնում նրան։ Ոտքերը ճն-ճել նույնպես ձանձրալի էր։ Իսկ նա շարունակում էր սպասել։

Ցանկապատը երկար էր։

Կատվի ձագերը չորսն էին և փոքրիկ։

Իսկ կրկեսում ծաղրածուներ կան։ Կան նաև լարախաղացներ, որ երբեք չեն ընկնում պարանի վրայից։

Անձրևը նորից կաթկթեց։ Իսկ տղան նստել էր ցանկապատի վրա և աշխարհին էր նայում։

Հետո, երբ անձրևի կաթիլները շատացան ու խո-շորացան և տղայի ոտքերը մրսեցին, նա վերջա-պես տուն գնաց։ Տանը սեղանի տակ կատվի ձա-գերն էին, որ դեռ չէին տեսնում այս զարմանալի աշխարհը։

Դուռը բացեց մայրը։ Նա երկու անգամ ուժեղ թփփացրեց տղայի մեջքից ներքև, ստիպեց լվաց-վել և ուղարկեց քնելու։



# ՍԵՄ ԿՐՏՍԵՐԻ ԽԱՂԱԹՂԹԵՐԸ

ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ



Թոմին կանգ առավ, իր խոշոր ձեռքով բռնեց Բոբի ուսը և ամփոփեց երկար ու բարակ քարոզը.

— Ուրեմն, կարևորն այն է, որ դու կարողանաս մի քանի րոպեով քեզ երջանիկ զգալ: Դու ինձ հասկացա՞ր, Բո՛բ:

— Իհա՛րկե, Թոմի՛:

Հետո շարունակեցին ճանապարհը:

Բոբը բարձրահասակ էր, գեղեցիկ քայլվածք ուներ և ամուր ձգել էր գոտին: Երջանիկ երևալու համար նրան հարկավոր էր միայն ժպտալ:

— Ես քեզ հավատում եմ, Բո՛բ,— նորից շատախոսել սկսեց Թոմին:— Ողջ աշխարհում դու չես գտնի այնպիսի մի սրիկայի, որին ես չկարողանայի հավատալ: Ես արդեն վաթսուն տարեկան եմ և սրանից հետո դժվար թե կարողանամ փոխել իմ համոզմունքները: Այսպես ուրեմն... Դու, ի՛նչ է, կասկածու՞մ ես: Ինչու՞ ժպտացիր:

— Չէ՛, Թոմի՛: Ես մտածեցի, որ եթե դու ճանաչեիր Սեմ կրտսերին, դժվար թե կարողանայիր հավատալ նրան:

Թոմին շփոթվեց:

— Իսկ ո՞վ է այդ Սեմ կրտսերը և ի՞նչ գործ ունես դու նրա հետ:

— Ես, Թոմի՛, նրա հետ ոչ մի գործ չունեմ: Նա մեր թաղում խաղաթղթերով ինչ-որ ձեռնածություններ է անում և միամիտ անցորդներից փող կորզում:

Թոմին սրտնեղում, ձեռքով ետ է տանում ճակատին թափված կոշտ ու ալեխառն մազերը:

— Ա՛յ, տեսնու՞մ ես, Բո՛բ, դու փորձում ես ինձ հիմարացնել, իհարկե, առանց այդ հասկանալու: Այդ Սեմ կրտսերը ոչ մի առնչություն չունի իմ համոզմունքների հետ. նրան, իհարկե, չպիտի հավատալ: Չէ՞ որ խաբելը նրա արհեստն է: Նա [illegible] միջոցով է փող վաստակում և, իմ կարծիքով, ոչ մի կարգին մարդ չպետք է գայթակղվի նրա խաղաթղթերով: Հա՛, բայց մենք ինչի՞ մասին էինք խոսում, Բո՛բ:

— Այն մասին, Թոմի՛, որ ողջ աշխարհում դու չես գտնի այնպիսի մի սրիկայի, որին չկարողանայի հավատալ:—Թոմի՜ն շփում է ճակատը, փորձում է ցրել կնճիռների կույտը:

— Հա՛, հիշեցի: Ուրեմն կարևորն այն է, որ դու քեզ երջանիկ զգաս մի քանի վայրկյանով միայն: Իհարկե, դա քեզանից մեծ ճիգ չի պահանջի: Ընդամենը մի քանի վայրկյան, և դրա դիմաց դու կստանաս...

— Քսանհինգ դոլլար:

— Այո՛: Ես համոզված եմ ասում, որ դա քեզանից մեծ ճիգ չի խլի: Դու դեռ երիտասարդ ես... ընդամենը տասնհինգ տարեկան: Եթե ես տասնըհինգ տարեկան լինեի, հենց միայն այդ մտքից, երջանիկ կզգայի ինձ:

444-րդ ավենյուի հենց սկզբին, Թոմին կանգ առավ: Բոբը լուռ սպասեց: Նա մինչև Բոբին բացատրություններ չտար և այդ վայրի հետ կապված սեփական դատողությունները չհաղորդեր նրան, քայլ չէր անի:

— Սպիրոս Սկուրա՛ս...— հանդիսավոր արտասանեց նա, հետո հարցրեց.— Դու լսե՞լ ես այդ անունը:

— Լսել եմ:

— Նրան կործանեց Կլեոպատրան: Ոչ իսկականը, իհարկե, այլ՝ կարծեցյալ Կլեոպատրան... Էլիզաբեթ Թեյլորը: «Կլեոպատրան և ամենաերկար օրը» ֆիլմի նկարահանման ժամանակ, նրա հիվանդության

պատճառով, նախատեսված 18 միլիոնի փոխարեն, Սպիրոս Սկուրասը ստիպված էր ծախսել 30 միլիոն, և «Ֆոքս քսաներորդ դարը» իր գոյությունը պահպանելու համար, ստիպված էր փայտից ու ստվարաթղթից շինված իր քաղաքները վարձով տալ թափառաշրջիկներին, իսկ այդ Էլիզաբեթը... կծեծեի ես նրան... ո՞նց կծեծեի... իր ատամնացավի պատճառով վառեց Սկուրասին, Ֆոքսի արքային... և... ինձ: Նրա պատճառով ինձ շան նման փողոց շըպրտեցին, իսկ դու գիտես ինչպիսի՜ հյուսն էի ես... ինչպիսի՜ դեկորատոր:

— Իսկ Էլիզաբեթ Թեյլորին, Թոմի՛, դու տեսե՞լ ես:

— Տեսել եմ:

— Իրո՞ք նա այնպես գեղեցիկ է, ինչպես կինոնկարներում:

— Իրոք, Բո՛բ: Նա շատ գեղեցիկ է, ավելի գեղեցիկ կին ես չեմ տեսել: Նրա գեղեցկությունը կործանարար է: Նա կործանեց Սկուրասին և ինձ:

Քիչ անց, նրանք կինոստուդիայի դռների մոտ էին: Այնտեղ արդեն կային մի քանի հարյուր պատանիներ ու աղջիկներ, որոնք աղմկում ու պահանջում էին, որ իրենց ներս թողնեն:

— Սա դատարկ բան է, Բո՛բ. երկու տարի առաջ, այստեղ հազարավոր մարդիկ էին խմբվում... Հիմա արդեն այն չէ: Գնանք, ներս անցնենք:

Նրանց կանգնեցրեց պահակը.

— Ո՞ւր եք քշում:

— Մենք Պատրիկի հրավերով ենք ներկայացել,— բացատրում է Թոմին:

— Պատրիկը չի հրավիրում. Պատրիկը կանչում է:

— Լսի՛ր, երիտասարդ, այստեղ ինձ բոլորը ճանաչում են: Այստեղ ես քաղաքներ եմ կառուցել... «Վեստ սայիդյան պատմություն»: Դեկորներն իմ ձեռքի գործն են, է՛: Դա գլուխ-գործոց էր:

— Թքա՛ծ «Վեստ սայիդյան պատմության» վրա: Մի կո՛ղմ քաշվեք:

— Դու մի՛ զարմացիր, Բո՛բ,— արդարանալ սկսեց Թոմին,— բոլոր պահակներն էլ այդպես են: Նրանց համար սրբություններ չկան, բայց նրանք այնքան վատ չեն, ինչքան թվում են. աշխատանքի բնույթն է այդպիսին: Ա՛յ, հենց այստեղ, ժամանակին մի պահակ էր կանգնում, սրանից էլ խիստ... Բայց գիշերները հարբում ու լաց էր լինում:

— Է՛յ, Թոմի՛, այստե՛ղ ուղարկիր տղային,— լսվում է մի ձայն:

— Պատրիկն է, Պատրիկ Ստիլը,— ուրախանում է Թոմին:— Այստեղ ինձ բոլորն են ճանաչում: Գնանք:

— Դու սպասի՛ր, Թոմի՛... դու դեռ այնքան ջահել չես,— կատակում է Պատրիկը: —Նե՛րս անցիր, երիտասա՛րդ: Կեցցե՛ս, Թո՛մի, տղան կարգին մռութ ունի:

Թոմին ուզում է ինչ-որ բան ասել... որ ինքը գիտե գործը, որ վաղուց է կինոյում, բայց չի հասցնում: Թոմին մնում է դռների մոտ. Նա մի պահ շփում է ճակատի կնճիռները, ապա դրան արանքից կանչում է հեռացող Բոբի հետևից.

— Դատարկ բան է, Բո՛բ: Հարկավոր է ընդամենը մի քանի վայրկյան կամերայի առաջ երջանիկ լինել... ես քեզ կսպասեմ: Նկարահանման ժամանակ կամերային չնայես:

* * *

Բոբը լոգանք ընդունեց, Բոբին հագցրին, գեղեցկացրին ևասացին, որ երկար պառկի կանաչ բլրակի թեքության վրա, սպիտակ առանձնատան մոտ և ուրախ ձևանա: Բայց նա ուրախ էր իսկա-



կանից: Ասիստենտներից մեկը, սպիտակ ու լայն շրջազգեստով մի աղջկա ձեռքից բռնած՝ մոտեցավ Բոբին:

— Ա՛յ, սրա մոտ էլ հենց նստի՛ր, —ասաց ասիստենտը: —Ինչի մասին ուզում եք՝ դուրս տվեք... միայն թե աշխուժություն լինի:

—Դու՞ էլ ես առաջին անգամ նկարահանվում,— Բոբի կողքին տեղավորվելուց հետո, անմիջապես հարցրեց աղջիկը:

— Առաջին անգամ:

— Հետաքրքիր է... իմ անունը Լյուսի է:

— Իմը՝ Բոբ:

— Մենք, կարծեմ, պիկնիկի ենք հավաքված և մեր ծնողներից յուրաքանչյուրը ունի մեկ միլիոնից ոչ պակաս:

— Երկու միլիոն:

— Տասը միլիոն:

— Քսան:

— Երեսուն:

Հետո նրանք երկուսն էլ ծիծաղում են:

— Գիտե՞ս, իմ ընկերուհուն՝ Ջոյսին, չվերցրին: Խեղճը դրան մոտ լաց է լինում, իսկ իմ կյանքի լավագույն օրն է սա: Գիտե՞ս, ես քսանհինգ դոլլարի համար չեմ եկել... հետաքրքրության: Հետո, ես որոշել եմ կինոդերասանուհի դառնալ: Ի՞նչ ես կարծում։

— Ոչինչ էլ չեմ կարծում. գիտես, որ դա ուզելով չի:

— Բայց ուզելը նշանակություն ունի, չէ՞: Ասենք, եթե Հեմֆրի Բոգարդը չուզեր դերասան դառնալ... Հեմֆրի Բոգարդ չէր էլ լինի:

— Չուզելու դեպքում՝ այո:

— Ուշադրությո՜ւն...—լսվեց ասիստենտի ձայնը, և՛ բոլոր տղաներն ու աղջիկները, և՛ նրանք, ովքեր հաստատ որոշել էին նշանավոր կինոդերասաններ դառնալ, և՛ նրանք, ովքեր ուզում էին, որքան կարելի էր շուտ, 25 դոլլարի տեր դառնալ, աշխուժացան և երջանիկ դեմքեր ընդունեցին:

* * *

Իսկ դրսում, դռների մոտ, Թոմին իր գլխին էր հավաքել այնտեղ մնացածներին և ճառում էր.

— Դե, տղանե՛ր, դուք մի՛ վիրավորվեք... Կինեմատոգրաֆը, դա բարդ գործ է: Հարկավոր են համապատասխան դեմքեր... տիպաժներ... Ա՛յ, նայում եմ ձեր մռութներին, և ոչ մեկը բանի նման չի: Դուք անգամ եթե ծիծաղեք էլ, միևնույն է, ձեր դեմքերի տխրությունը և չարությունը չի անցնի: Հարկավոր են երջանիկ դեմքեր... Ես քսան տարի է այս գործի մեջ եմ, և ինձ դուք իրավունք չունեք չհավատալու: Ես ինքս էլ հավատում եմ բոլորին և ողջ աշխարհում դուք չեք գտնի մի սրիկայի, որին ես չկարողանայի հավատալ...

Հետո նա սկսեց տղաներին պատմել Սպիրոս Սկուրասի և Էլիզաբեթ Թեյլորի մասին, որն աշխարհի ամենագեղեցիկ կինն է և որը կործանեց թե՛ Սկուրասին, թե՛ իրեն:

* * *

Երբ Բոբը դուրս եկավ կինոստուդիայից, անմիջապես նրան մոտեցավ Թոմին.

— Դե, ինչպե՞ս էր, Բո՛բ:

— Ոչինչ:

— Բայց դու ինչու՞ ես տխուր, Բո՛բ:

— Ոչի՜նչ, հենց այնպե՜ս:

— Չէ՛, չէ՛, դու ասա՛, ինձնից ոչինչ մի՛ թաքցրու:

— Դե, ինչպե՞ս ասեմ... այս ամենը աչքակապություն է... Սեմ կրտսերի խաղաթղթերի նման մի բան... Այդտեղ ոչ մեկն էլ իսկականից երջանիկ չէր... Ա՛յ, թեկուզ ես կամ Լյուսին:

— Ո՞վ է այդ Լյուսին և ի՞նչ գործ ունես դու նրա հետ:

— Մի աղջիկ էր, միասին էինք նկարահանվում:

— Ա՛յ, տեսնո՞ւմ ես, Բո՛բ, դու աշխատում ես հիմարացնել ինձ: Չէ՞ որ այդ ճանապարհով նրանք փող են աշխատում: Դա բիզնես է, և ոչ մի կարգին մարդ չպիտի հավատա դրան:

Նրանք քիչ էլ քայլեցին, հետո Թոմին սկսեց շփել ճակատը, ապա կախեց գլուխը և կամացուկ ասաց.

— Քսանհինգ դոլլարը ստացա՞ր, Բո՛բ:

— Ստացա, Թոմի՛:

— Ինձ մի երեք դոլլար կտա՞ս, Բո՛բ... Իհարկե, պարտքով:

— Իհա՜րկե, Թոմի՛:

Եվ երբ նա Թոմիին մեկնեց թղթադրամը, տեսավ ինչպես էին երջանկությունից փայլում նրա բաց երկնագույն աչքերը:





# ԵՐԵՔ ՈՒՐԱԽ ԳՈՒՅՆԵՐ[1]

ՅՈՒ. ՍՄՈԼՆԻԿՈՎ

## ԹԵ ԳՈՒՅՆԵՐՆ ՈՒՐ ԳՆԱՑԻՆ ԵՎ ՈՎ ՄՆԱՑ ՏԱՆԸ

Պետությունը շատ փոքր էր. համարյա խաղալիքի չափ։ Երկիրը վառ էր, ուրախ, գույնզգույն։ Ժողովուրդն էլ գունավոր էր։ Դրանք գույներ էին մետաղյա սրվակների մեջ։ Իհարկե, ոչ հասարակ, այլ՝ կախարդական, հեքիաթային, բայց այնուամենայնիվ, գույներ։

Գլխավոր գույները համարվում էին դեղին Քրոմը, կարմիր Որդանը և կապույտ Կոբալտը։ Նրանք կարող էին ստանալ ուզած գույնը. և՛ մանուշակագույն, և՛ վարդագույն, և՛ նարնջագույն, և՛ երկնագույն, և՛ ուրիշ հարյուր քսանհինգ գույներ։

Մի անգամ Հետաքրքիր Գրքերի Երկրի բնակիչները հրավիրեցին ուրախ հարևաններին, որ տոնի առթիվ նախշեն գրքերի մայրաքաղաքը։

Լուսաբացին գույները կուռ շարքերով ճամփա ընկան։ Բայց բոլոր ներկերը չգնացին։ Չար ու մռայլ Սևագույնը մնաց տանը։ Նրա հետ մնացին նաև այն ներկերը, որոնք միայն ծովի փոթորիկ, մութ գիշեր և ամպամած օր էին նկարում։

Պետության մեջ բոլորը հաճույքով իրենց աշխատանքն էին կատարում, իսկ Սևագույնը միշտ դժգոհ էր, չնայած կոշիկ մաքրելուց բացի, ոչինչ չգիտեր։ Բայց աշխարհում ամենից շատ նա էր սիրում պարծենալ։

Քանի՜ անգամ կատաղությունից ուզեցել էր գարնան նուրբ կանաչը իր սև խոզանակով ներկել։ Բայց Որդանը ժամանակին նկատել և Սևագույնին հեռացրել էր բացատից։

— Ամեն մեկն իր գործն է անում, — ասել էր Որդանը։ — Դո՛ւ էլ աշխատիր, կոշիկ մաքրելն էլ կարևոր է։

Բայց այն օրը, երբ ներկերը գնում էին տոնակատարության, նա այնուամենայնիվ բոլոր կոշիկները մաքրեց։ Չէ՞ որ իմաստուն և պահանջկոտ ծերմակը աշխարհում ամենից շատ մաքրությունն էր սիրում։ Նույնիսկ խոնավ եղանակներին նա ոչ մեկին թույլ չէր տալիս կեղտոտ կոշիկներով ման գալ։

Մենք մոռացանք ասել, որ նշանավոր Սոսինձը գրքերի մայրաքաղաք չգնաց։ Այդ կարգապահ ծերուկը արհեստանոցում միշտ գործ էր ունենում։

## ՕԴԱՅԻՆ ՓՈՒՉԻԿԻ ԵՎ ՍԱՐՍԱՓԵԼԻ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Երբ ներկերը գնացին, կոշիկ մաքրող հաստափորը խոզանակները խոթեց գրպանը, գնաց վարպետ Սոսնձի մոտ և քաղցր ձայնով ասաց.

— Խնդրում եմ, ինձ մի փուչիկ տուր։ Ուզում եմ քաղաքի վրա բարձրանալ և տեսնել, թե մեր եղբայր գույները ուր են հասել։ Երբ նրանք չկան, շատ եմ ձանձրանում։

— Ինչու չէ, կարելի է, — պատասխանեց վարպետը։ — Ահա, վերցրո՛ւ այս փուչիկը և ամուր կապիր, որպեսզի չթռչի։ Պարանն աստիճանով բարձրացի՛ր և, որքան ուզում ես, նայի՛ր։

Սևագույնը արեց այնպես, ինչպես վարպետ Սոսինձն էր պատվիրել։

— Ինչպե՞ս է, երևո՞ւմ է, — ներքևից անընդհատ հարցնում էր վարպետ Սոսինձը։

— Երևում է, երևում, — մռայլ պատասխանում էր Սևագույնը։

Հետո Սևագույնը նստեց փուչիկին և սկսեց կապույտ երկնքին սև ներկ քսել։

— Ի՞նչ ես անում, ավազա՛կ, — գոռաց Սոսինձը, — խաբեցիր ինձ։ Կա՛նգ առ, կեղտո՛տ ներկ։

Բայց արդեն ուշ էր։ Երկինքը սևացավ, և երկիրը մթնեց. ասես գիշեր լիներ։

Իսկ Սևագույնը իր սև գործը վերջացնելուց հետո, իջավ քաղաքային աշտարակի վրա, գրպանից դուրս քաշեց սև թագը, դրեց գլխին և քաղաքով մեկ աղաղակեց.

— Ես՝ Սևագույն Առաջին Մեծս, ամենագլխա-

[1] Տպագրվում է թեթև կրճատումներով։

վոր և ամենագեղեցիկ ներկս, ինձ հայտարարում եմ թագավոր։ Ես ինքս կներկեմ իմ թագավորությունը։ Կեցցե՛, կեցցե՛, կեցցե՛։

Եվ, պատկերացրեք, որ գտնվեցին ոտքի տակ ընկած, համարյա չորացած, գորշ գույներ, որոնք գնացին թագավորի մոտ որպես պահապան աշխատելու։

Չգիտես որտեղից մի դատարկ սրվակ հայտնվեց։ Ոչ ոք չգիտեր, թե երբ և ինչ գույնի է եղել նրա միջի ներկը։ Հիմա նրա մեջ միայն սարդեր էին ապրում։ Այդ սրվակի անունն էր Սատկած—Գըրծած... Նա դարձավ Սևագույն Առաջինի նախարարապետը։ Եվ արքան նրան պարգևատրեց «Առաջին Աստիճանի Լաքա» շքանշանով։

## ՆԱԽԱՐԱՐԱՊԵՏ ՍԱՏԿԱԾԻ, ՍԵՎ ՑԱՆՑԻ ԵՎ ԹԱԳԱՎՈՐԻ ԱՆՀԱՎԱՏԱԼԻ ՀՐԱՄԱՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Երբ Ուրախ Գույների Երկիրը վերածվեց սովորական հեքիաթային թագավորության։ Քաղաքի ատամնավոր պարսպի վրա ննջում էր «անքուն» պահակազորը։ Նախարարապետ Սատկածը հաճախ հրամաններ էր հորինում, որոնք փակցըվում էին ամենաբարձր աշտարակին։

### ԹԱԳԱՎՈՐԱԿԱՆ ՀՐԱՄԱՆ № 1

Այսօրվանից ամբողջ թագավորության մեջ սևից և գորշից բացի, բոլոր գույները արգելվում են։ Այսուհետև, բնակիչներին թույլատրըվում է տները միայն սև կամ գորշ գույնով ներկել, սև կամ գորշ հագնել։ Քաղաքի վրա սև ցանց գցել, որպեսզի ոչ ոք և ոչինչ թագավորությունը չանհանգստացնի և նորին մեծության քունը չվրդովի։ Հրամանը խախտողները կճզմվեն, իսկ ճզմված սրվակները կօգտագործվեն որպես մետաղի ջարդոն։

ԱՐՔԱ ՍԵՎԱԳՈՒՅՆ

### ԹԱԳԱՎՈՐԱԿԱՆ ՀՐԱՄԱՆ № 2

ԲՈԼՈՐ ԳԱԶԱՆՆԵՐԻՆ ԵՎ ԹՌՉՈՒՆՆԵՐԻՆ

Ով որ սև չէ կամ գորշ, թո՛ղ թագավորությունից դուրս կորչի։

Լրացում հրամանին. ով կեղտոտ է, կարող է մնալ։

ԱՐՔԱ ՍԵՎԱԳՈՒՅՆ

### ԹԱԳԱՎՈՐԱԿԱՆ ՀՐԱՄԱՆ № 3

Ով ուզում է մնալ, պարտավոր է. սև կամ գորշ ներկվել կամ ընդհանրապես դառնալ անգույն։

ԱՐՔԱ ՍԵՎԱԳՈՒՅՆ

Տանը մնացած ներկերը կարդացին հրամանները, թոթվեցին կապարե ուսերը և թաքնվեցին՝ մինչև լավ ժամանակները գան...

Քաղաքի վրա սև ցանց քաշեցին։ Բոլոր ոչ գորշ և ոչ սև գազանները, թռչունները և ձկները վռնդվեցին կամ ներկվեցին։ Ինքնակոչ արքա Սևագույն Առաջինը հաճույքից շփում էր ձեռքերը։

## ՀԱՅՏՆՎՈՒՄ ԵՆ ՆՈՐ ՀԵՐՈՍՆԵՐ

Ինչպես միշտ, վարպետ Սոսնձի գործն անսպառ էր։ Հնացած չոր ներկերից նա պատրաստում էր գունավոր մատիտներ։ Հենց նոր մի քանի մատիտ էր պատրաստել, երբ արհեստանոց ժամանեց ինքը Սևագույնը։

— Է՜յ, Սոսի՛նձ, լսի՛ր։ Չնայած որ դու ո՛չ սև ես, ո՛չ էլ գորշ՝ ես քեզ ներում եմ։ Քո վարպետությունը վաղուց հայտնի է, և դու ինձ պետք կգաս։ Բայց տե՛ս, թագավորությանս մեջ գունագեղություն չցցես։ Թե չէ միջուկդ դուրս կհանեմ։ Իսկ սա ի՞նչ է,— և արքան ցույց տվեց մատիտները՝ կանաչ Կանաչուկը, մանուշակագույն Մանուշը և նարնջագույն Շեկլիկը։

— Ձերդ մեծություն,— պատասխանեց վարպետը,— նրանք անվնաս մատիտներ են, բոլորովին անվնաս։ Նրանք դեռ նկարել չգիտեն։

— Միևնույն է։ Զինվորնե՛ր, գորշացրե՛ք սրանց։

Զինվորներն արագ կատարեցին հրամանը, և խայտաբղետ, փայլուն մատիտները դարձան գորշ և տաղտկալի ձողեր։

Սևագույնը նստեց սև ու գորշ զեբրերին լծված կառքը և գնաց, իսկ մատիտները դառը լալիս էին։

— Մի՛ վշտացեք, տղանե՛ր, այսպես նույնիսկ լավ է,— ասաց վարպետ Սոսինձը,— հիմա ոչ ոք չի իմանա, որ դուք ուրախ ու վառ եք։ Եվ իսկապես, դուք գունավոր էլ մնացիք։ Միայն ափսոս, որ դեռ նկարել չգիտեք։

— Ահա և սովորեցինք,— ծվծվաց Մանուշը և իսկույն ավազի վրա մի ծիծաղելի մռութ խզբզեց։

— Դե որ այդպես է,— ժպտաց վարպետ Սոսինձը,— հերթով մոտեցե՛ք. ձեզ հարկավոր է սրել։ Ես ձեզ գլխարկներ կտամ, դուք կդնեք և չեք հանի. այդ ժամանակ ձեր վառ բթերը ոչ ոք չի նկատի։

## ԽԻԶԱԽ ՄԱՏԻՏՆԵՐԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆԸ ՍԵՎԱԳՈՐՇ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՈՒՄ

Հազիվ էր վարպետ Սոսինձը կացինը մի կողմ դրել և գնացել քնելու, երբ Կանաչը, Շեկլիկը և Մանուշը անմիջապես դուրս թռան։ Սև երկնքում գորշ լաթաներով լուսինն էր կախվել։ Արքան սևագորշ երազ էր տեսնում, դրա համար էլ հանգիստ էր քնել։ Այնինչ նախարարապետ Սատկածը մի կողքից մյուսն էր շուռ գալիս և տնքում։ Երևի գունավոր երազ էր տեսնում…

Փողոցում հանգիստ էր։ Մատիտները մեկը մյուսի հետևից, գլխարկները ձեռքներին գնում էին։ Հանկարծ պատի մոտ վառ երկնագույն մի սրվակ տեսան։

— Դու ո՞վ ես,— ասաց Կանաչը և մոտեցավ վախից դողացող նուրբ սրվակին։

— Ես Երկնագույնիկն եմ։

— Ինչո՞ւ ես այստեղ կանգնել։

— Մայրիկիս եմ սպասում։

— Ուզո՞ւմ ես գնանք թագավորությունը նայենք։

— Ուզում եմ,— պատասխանեց Երկնագույնիկը,— բայց վախենում եմ։

— Մի՛ վախեցիր։ Մենք չենք թողնի, որ քեզ բան անեն։

Եվ չորսով քայլեցին դեպի Սևագորշ աշտարակը։ Երկնագույնիկը թախիծով նայում էր երկնքին և երկնագույն արցունքներ թափում, որոնք մթության մեջ թանկարժեք քարերի պես փայլփլում էին։



Աշտարակի վրա սպիտակին էր տալիս Սևագույն Առաջինի նոր հրամանը։ Մթության մեջ դժվար էր որոշել, թե այնտեղ ինչ էր գրված։

Այդ ժամանակ Կանաչը հենվեց աշտարակին, Մանուշը կանգնեց նրա գլխին, իսկ Շեկլիկը մագլցեց Մանուշի ուսերին։ Նա ձգվեց մինչև հրամանը և Սևագույն Առաջինի ստորագրությունից քիչ ներքև մի սարսափելի ռեխ նկարեց և տակը տպագիր տառերով գրեց (իհարկե որոշ սխալներով. չէ՞ որ նա դպրոց չի գնացել).

## ՍԵՎ ԹԱՔԱՎՈՐՆ ԱԳՈՒՇ Է

Դա փոքրիկներին շատ ուրախացրեց։ Նրանք սկսեցին քաղաքով մեկ վազել և պատերին մռութներ նկարել ու վիրավորական խոսքեր գրել Սևագույնի հասցեին։ Ամենից շատ Շեկլիկն աշխատեց։ Նա նույնիսկ իր նարնջագույն քիթը ջարդեց և դրա համար էլ մի քիչ կարճացավ։

Բայց հանկարծ լսվեց պահակների ոտնաձայնը։ Կտրիճները լռեցին։ Ըստ երևույթին, պահակները Երկնագույնիկի արցունքներն էին տեսել գետնին և հիմա այդ հետքով գալիս էին։

— Գլխարկները դրե՛ք և շա՛րք կանգնեք։ Երկնագույնի՛կ, թաքնվի՛ր մեր հետևը և մի՛ շարժվիր,— հասցրեց փսփսալ Կանաչը։

Պահակները մոտեցան մատիտներին։

— Ես ասում էի, որ սա ցանկապատ է,— բամբ ձայնով ասաց նրանց ավագը։— Ցանկապատ է, ուրիշ ոչինչ։ Գնանք նախարարապետ Սատկածին զեկուցենք, որ ամեն ինչ կարգին է, և պառկենք քնենք։

Այդ պահին պահակներից մեկը նայեց աշտարակին և մի սարսափելի շիկավուն ռեխ տեսավ թագավորի հրամանի վրա։ Ռեխը նայում էր ներքև, ծամածռություններ անում և ծիծաղում։

Ջոկատը սարսափից ոռնաց, զենքերը գցեց և սլացավ դեպի թագավորի պալատը։ Բայց պալատին չհասած, պահակներն անզգա վայր ընկան. թագավորական դռներից մանուշակագույն և կանաչ մռութներ էին նայում…

Սարսափից պահակների սրվակները հալվեցին և առավոտյան բոլորին տարան վարպետ Սոսինձի մոտ նորոգելու։ Իսկ մատիտները բարեհաջող տուն հասան և լավ դաս կերան անհնազանդության համար։ Խստապահանջ Սոսինձը նրանց անկյուն կանգնեցրեց։

Մանուշի, Շեկլիկի և Կանաչի հետ եկած Երկնագույնիկին վարպետ Սուրինձը տանը պահեց։ Երեկոյան վարպետը թանձր սուրինձ քսեց կամուրջին, որպեսզի մատիտները չփախչեն անից և հանգիստ պառկեն քնելու։

## ԵՐԵՔ ՈՒՐԱԽ ԳՈՒՅՆԵՐԻ ՎԵՐԱԴԱՐՁԻ ԵՎ ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉ ՏԵՍԱՆ ՆՐԱՆՔ ՏԱՆԸ

Այդ ժամանակ, Գրքերի երկրում Ուրախ Գույներն արդեն վերջացնում էին իրենց աշխատանքը։



Նրանք այնպես գեղեցկացրին հարանների մայրաքաղաքը, որ արևը երբ ներքև նայեց, հիացավ և երեք օր անընդհատ լուսավորեց։

Գլխավոր գույները՝ ուրախ Քրոմը, զորեղ ու համարձակ Որդանը և հանգիստ ու խոհուն Կոբալտը որոշեցին բոլորից շուտ տուն գնալ։ Իսկ այստեղ իմաստուն Ճերմակի ղեկավարությունն էլ բավական էր։ Նա խստորեն հետևում էր, որ ուրախ նկարարներն ամեն տեղ խայտաբղետ հետքեր չթողնեն։

Երեք գլխավոր գույները Քրոմի երգի տակ ճանապարհ ընկան։

Հե՜յ, դեպի ձա՛խ, դեպի ա՛ջ,
Եկեք ներկենք քար ու հող,
Հե՜յ, մե՛կ-երկո՛ւ, դե, առա՛ջ,
Կանաչ դառնա դաշտը թող։
Հե՜յ, մեկ-երկու, դե ներկեք
Երկինք, գետին անխնա։
Ծաղիկները զարդարենք
Մեր ժպիտով ես, դու, նա...

Ահա և ծանոթ հրապարակը։ Բայց սա ի՞նչ անիմաստ սևագործ աշտարակ է։ Ինչո՞ւ է չորս կողմն այսպես մռայլ։ Թռչունները չեն երգում, արևը չի փայլում։ Ինչո՞ւ է ամեն ինչ այսպես սևացել և գորշացել։ Նույնիսկ կատուները կարծես թե միատեսակ են՝ գորշ կամ սև։ Մի շեկ բոթոթ էլ չկա։

Աշտարակի վրա, առկայծող լապտերի տակ, սև տառերով ծածկված մի թուղթ էր երևում։

### ԹԱԳԱՎՈՐԱԿԱՆ ՀՐԱՄԱՆ № 4

### ՀԱՆՈՒՆ ԹԱԳԱՎՈՐԻ

Քրոմը, Որդանը և Կոբալտը պայծառության համար հայտարարվում են պետական հանցագործ։

Հանցագործ են հայտարարվում նաև Նարնջագույնը, Երկնագույնը, Կանաչը, Մանուշակագույնը և մյուս 125 գույները։ Հանցագործներին բռնելու համար հայտարարվում է պարգև՝ երեք շիշ սև կոշկաներկ։

ԱՐՔԱ ՍԵՎԱԳՈՒՅՆ ԱՌԱՋԻՆ

— Եվ վերջի՛ն...— համարձակորեն ասաց Կոբալտը՝ բարձրաձայն կարդալուց հետո։

— Հարկավոր է սպասել, մինչև որ մնացած գույները վերադառնան...

— Սպասել։ Իսկ Սև տխմարը մեր պետությունն ապականի՞։ Ո՛չ մի դեպքում,— վրդովվեց Որդանը։

— Ինքներս հաշիվը կտեսնենք։ Կորչի՛ Սևագույնը,— ավելացրեց Քրոմը,— մանավանդ որ մենակ չենք. նայե՛ք, ինչ-որ մի կատակասեր հրամանի տակ ծիծաղելի մուկ է նկարել։ Ահա գրություններ պատերին։

Պատերն գունավոր տառերով և սլաքներով խզբզված էր.

## ՄԵՆՔ ՈՒԶՈՒՄ ԵՆՔ ԱՐԵՎ ՅԵՎ ԾԱՂԻԿՆԵՐ

— Այո՛, բարեկամներ, մենք մենակ չենք։ Վարպետ Սուրինձն էլ մեզ կմիանա,— ասաց Որդանը։

— Ուրեմն, առա՛ջ։

Սակայն երեք ընկերները չնկատեցին, թե ինչպես աշտարակի հետևից, անորոշ գույնի մի տձև կերպարանք դուրս պրծավ և գետնին քսվելով վազեց դեպի թագավորական պալատ...

(Շարունակելի)



# ՀԵՔԻԱԹԻ ԷՐ ՆՄԱՆՎՈՒՄ

ԼԵՈՆԻԴԱՍ ԲԱՐԼԵՏՏԱ
(Արգենտինյան գրող)

Նկ. ԷԴՎԱՐԴ ՋԱՖԱՐՅԱՆԻ

Ամադեոն գնում էր ճանապարհով, գիշերվա լռության մեջ լսում յուրաքանչյուր խշշոց և չէր համարձակվում բոբիկ ոտքերը դնել կանաչների վրա։ Իր հետ նա վերցրել էր լապտեր։

Լապտերի կրակը դողդողում էր ինչպես իր սարսափահար սիրտը։

Տղան սարսափում էր և եթե նայեր երկնքին՝ գլուխը պտույտ կգար. անհամար աստղեր շողշողում էին խոր, մութ տարածության մեջ։ Եվ պարզ չէ, թե ո՞ր անհայտ բարձունքից հանկարծ լսվեց մի ձայն, որ նման էր հեռավոր գետի աղմուկին։

Հոգնածությունից նրա թուլացած ծնկները ծալվում էին ինչպես թոնրի շուրթից պոկված հացը՝ կուչ գալով այրվում։ Վախը է՛լ ավելի էր անում նրա սրտում։ Գորտերը և ծղրիդները անընդհատ օդը լցնում էին սուր և խլացուցիչ ձայներով։ Եվ ժամանակ առ ժամանակ այդ անկազմակերպ երգչախմբին միանում էր հեռավոր շան հաչոցը ու դա էլ ավելի էր անհանգստացնում Ամադեոյին։

Բակում, ուր ուռենիներ էին աճում, կային կըծան շներ, որոնց մասին պատմում էին շատ տարբեր պատմություններ։ Տղան վախենում էր այդ շներից, սարսափում։

Եվ վերջապես նա բժշկի տան մոտ էր։

Տան ճակատային մասը կլոր էր, ապակեպատ։ Փողոցից լսվում էր բարձրաձայն խոսակցություն և ծիծաղի պոռթկումներ։

Ամադեոն լապտերը դրեց գետնին և երկու ձեռքով թափահարեց դռան զանգը։ Ներսում լսվեց զանգի սուր ձայնը, ծիծաղը կտրվեց։ Սպասուհին բացեց դուռը։

— Բժիշկը տա՞նն է։

— Նա ընթրում է։

— Ես այն սպիտակ տանից եմ... դարբնոցից... թող շուտ գա, նա մահանում է։

— Մահանո՞ւմ է... ո՞վ է մահանում։

— Մայրս։

— Լա՛վ, լա՛վ, ա՛յս րոպեիս կգա։

— Խնդրում եմ... միայն թե շո՛ւտ...

— Ա՛յս րոպեիս, տղաս... կճաշի և կգա։

Դուռը փակվեց, և Ամադեոն նորից մնաց մենակ։

Տղան նայեց լապտերի ծածանվող լույսին և նրան նորից պատեց ահն ու սարսափը։ Նա պարզ տեսնում էր իր մոր հողագույն դեմքը, լսում նրա ծանոթ ու անկանոն շնչառությունը։

Բժշկի տանից լսվում էին ամանների շրխկոց ու զնգոց, աղմկալի ձայներ և մանկական սուր ծիծաղ։

Արդեն երկու տարի է, որ նրա հայրը... Իսկ եթե մահանա և մայրը...

Նա սթափվեց և, անկախ իրենից, ամբողջ ուժով սկսեց թափահարել զանգափողը։

Երբ սպասուհին նորից հայտնվեց դռան մոտ, տղան, կարելի է ասել, կիսաշունչ, հազիվ լսելի ձայնով ասաց.

— Բժիշկը վերջացրե՞ց։

— Ինչպե՞ս, դու նորի՞ց։

— Թող շո՛ւտ գա... ախր նա մահանում է...

— Չէ՞ որ ես ասացի արդեն... Նա շուտով կգա։ Հիմա ընթրում է։ Մի՞թե դրա համար պետք է ընթրիքը թողնի և գա,— և դուռը նորից փակվեց։

Գիշերային զով օդը թարմացրեց Ամադեոյի գլուխը։ Նրա ականջին մոր ձայնն էր. «Ամադե՛ո, գնա բժշկի մոտ, ասա՛ նրան, որ ես մեռնում եմ... Լապտերը վերցրու հետդ, թող նա շուտ գա»։

Ամադեոն հենվեց դռանը և լուռ լաց եղավ, սպասելով բժշկին։ Հանկարծ պատուհաններից մեկը բացվեց և երևացին երկու երեխա. մի տղա և մի աղջիկ։

— Փողոցով կախարդներ են անցնում,— ասաց փոքրիկ տղան,— արի կոշիկներ դնենք պատուհանին։

— Կախարդները մտնում են տները և մոտենում մահճակալներին,— առարկեց աղջիկը։

— Ռեկա՛րդո, դու քաղցրեղեն չե՞ս ուզում,— հարցրեց մեկը։

— Երեխաները սպասում են կախարդներին,— պատասխանեց մի ուրիշը՝ հանգիստ, հեզ ձայնով։

Աղջիկը ծափ տալով բացականչեց.

— Նրանք մեզ համար շա՛տ խաղալիքներ կըբերեն, չէ՞, հայրիկ։

— Երկու լիքը պարկ։

— Իսկ նրանք բոլո՞ր երեխաներին են խաղալիք բերում։

— Բոլոր լավ երեխաներին, նրանց, ովքեր ուտում են իրենց կերակուրը,— ավելացրեց հայրիկը։

Անցան երկար, շատ երկար րոպեներ, և Ամադեոն մտածեց, որ հիմա արդեն բժիշկը դուրս կգա, բայց տանից նորից լսվեց կանացի նույն քաղցր ձայնը.

— Ռեկա՛րդո, քեզ թե՞յ, թե՞ սուրճ:

Անհանգստությունը պատեց երեխային: «Վերցրո՛ւ լապտերը... ես մեռնում եմ... գնա՛... թող նա շուտ գա... շո՛ւտ, շո՛ւտ»: Արյունն ավելի արագ սկսեց խփել Ամադեոյի քունքերում:



— Լցնե՞մ քեզ համար մի բաժակ լիկյոր:

Ինչ-որ մի անբացատրելի ուժ ստիպեց տղային գնալ դեպի դուռը: Դի՛ն... դի՛ն... դի՛ն...

— Այդ ո՞վ է, որ անընդհատ զանգ է տալիս,— ջղայնացած հարցրեց կանացի ձայնը:

— Դարբնի տղան է,— պատասխանեց սպասուհին,— նա խնդրում է, որ սինյորը տեսակցության գնա:

Սպասուհին դուրս եկավ պատշգամբ:

— Բժիշկը տա՞նն է,— կրկնեց տղան:

— Հիմար մի՛ լինիր, տղա՛ս, մի անհանգստացրու մարդկանց, չէ՞ որ ես քեզ ասացի, երբ բժիշկը վերջացնի ընթրիքը, կգա քո մայրիկի մոտ:

Ամադեոն նորից մնաց մենակ:

Հոգնած և թուլացած, նա սկսեց ննջել. նստեց, լապտերը դրեց երկու ոտքերի միջև և զգաց, թե ինչպես իր ամբողջ մարմնի վրա մի քաղցր հանգստություն իջավ:

Հանկարծ լապտերը սկսեց ծիծաղել, դուրս հանելով կարմիր լեզուն, ծռմռելով և ծամածռություններ անելով: Տանից դուրս ելավ մի ծերուկ՝ սպիտակ, ծյունանման՝ հագուստով: Նա մոտեցավ երեխային, ձեռքը դրեց գլխին և բարությամբ ասաց.

— Դու կարող ես տուն գնալ, տղա՛ս, քո մայրն արդեն առողջ է. բացի դրանից, դո՛ւ էլ կոշիկներ դիր պատուհանին:

Եվ ահա այստեղ հայտնվեցին երեք կախարդներ՝ մուգ-կարմիր ուղտերի վրա նստած: Նրանք լուռ անցնում էին ճանապարհով՝ շրջապատված լույսի շողերով, ճիշտ այնպես, ինչպես նկարագրել էր մայրը: Խախտելով լռությունը, նրանք նվերներ էին դնում երեխաների կոշիկների մեջ:

Առջևից գնացողը, որ շլակին պարկ ուներ, ուղտից իջնելով, մոտեցավ տղային և մրթմրթաց.

— Այո՛... կոշիկ էլ չունի:

Իսկ մյուս կախարդը, նայելով նրան երկար ու կենտրոնացած հայացքով, նկատեց.

— Նա կերակուր էլ չի կերել,— ավելացրեց բարձրաձայն.— Հե՜յ, տղա՛, ի՞նչ է, քնե՞լ ես, այդպես շտապում էիր ու քնե՞լ ես:

Ամադեոն վեր թռավ և տեսավ իր առջև կանգնած բժշկին, որն իր ձեռնափայտով փակել էր ճանապարհը:

Դժվարությամբ ուշքի գալով, տղան վեր կացավ և շտապեց ճանապարհվելու: Նա քայլում էր առջևից, ճանապարհը լուսավորելով լապտերով, որը և հաճախակի կպչում էր նրա ոտքերին:

— Ե՞րբ է մահացել քո հայրը:

— Ձմռանը:

— Քանի տարեկան ես:

— Տասներկու:

— Ինչո՞վ ես մտադիր զբաղվել, երբ մեծանաս:

— Դարբին կդառնամ, ինչպես իմ հայրն էր:

Նրանք մոտեցան սպիտակ տնակին և ներս մըտան: Այնտեղ կատարյալ լռություն էր: Աստղերի լույսը թափանցում էր բաց պատուհանից, աղոտ լույս գցելով մեռածի երեսին:

Ճնաճանճի նման ինչ-որ խայթող խոսքեր ներխուժեցին Ամադեոյի մշուշոտ երազների մեջ: Այդ խոսքերն ասաց բժիշկը, որ ականջը դրել էր մոր կրծքի վրա:

— Ա՛յ թե նվեր բերեցին բարի կախարդները:

Ռուս. թարգմ. ՎԱՀԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ

Երևան—Պրահա: Ինչքա՜ն հեռու են իրարից այդ երկու քաղաքները, բայց երևանցի Արայիկ Սիմոնյանը կտրեց-անցավ այդ հեռավորությունը և հասավ Պրահա, ուր կազմակերպվելու էր այդ տարվա միջազգային մանկական ճամբարը:

Կայարանը զարդարված էր տոնա՛կանորեն: Եվ ինչքա՜ն դրոշակներ կային. կարմիր, կապույտ, կանաչ, սպիտակ... Թեթև քամին ծածանում ու իրար էր խառնում աչք շոյող բոլոր այդ գույները՝ ստեղծելով հրաշալի տեսարան:

Մի խումբ դպրոցականներ, ձեռքներին թարմ ծաղիկներ ու փոքրիկ դրոշակներ, շրջապատեցին Արայիկին: Տղան շփոթվեց. ո՞ր մեկին և ի՞նչ լեզվով պատասխաներ: Ասես թռչունների ուրախ համերգ լիներ՝ բազմաթիվ լեզուների քաղցր ճովողյուններից կազմված: Անգամ մոռացավ, որ գիտե հայերեն, ռուսերեն և մի քիչ էլ ֆրանսերեն: Բայց երբ տեսավ, որ բոլորն էլ ժպտում էին սրտանց, ինքն էլ չիմացավ, թե ինչպես միանգամից հասկացավ աշխարհի բոլոր լեզուները, և ոգևորված գոչեց.

— Բա՛րև ձեզ, ընկերնե՛ր, եղբայրնե՛ր, գդրաստվիցե՛, բոնժո՛ւր. ես հա՛յ եմ, Երևանից...

Իրար ձուլված տասնյակ լեզուներով բարձր ու աշխույժ թնդաց պատասխան ողջույնը:

Այդ և հաջորդ երկու օրերին Արայիկն էլ՝ ձեռքին ծաղիկներ ու Հայաստանի փոքրիկ դրոշակը, անսահման ուրախությամբ բոլորի հետ դիմավորում էր Գերմանիայից, Ճապոնիայից, Լիբանանից, Ամերիկայից և շատ այլ երկրներից եկող դպրոցականներին:

Կանաչի ու ծաղիկների մեջ թաղված նրանց ճամբարը մեծ աշխարհի փոքրիկ, բայց իրական պատկերն էր արտացոլում: Այնտեղ էին Անգլիան ու Ռուսաստանը, Գերմանիան ու Լեհաստանը, Հայաստանն ու Ամերիկան և դեռ այնքա՜ն երկրներ... Բայց հաճելի ու հետաքրքիր էր այդ աշխարհը, բազմալեզու փոքրիկների մի մեծ ընտանիք, ուր հասկանում և սիրում էին իրար: Իսկ ինչպե՞ս չսիրել զվարթադեմ Պիեռին, որ պարանոցդ քնքշորեն գրկած՝ պատմում է իրենց ընտանիքի, դպրոցի ու գեղեցիկ Փարիզի մասին և հրճվում է, լսելով Երևանի ու հրաշք Սևանի մասին: Եվ կամ ինչպե՞ս չսիրել հեռավոր Ալժիրից եկած գանգրահեր Թալիբին, որ նախշուն ազգային տարազ հագած, փոքրիկ սրինգը շրթունքին, խաղաղության ու բարեկամության մեղեդին է գեղգեղում: Թալիբը բարի է, ընկերասեր: Նա ֆրանսերեն գիտե և սիրում է Պիեռին, Պիեռն էլ՝ նրան: Բոլորին թվարկել հնարավոր չէ, բոլորն էլ այնքան ջերմ են ու հարազատ...

Շուտով Արայիկի փոքրիկ տետրակը լցվեց նոր ընկերների հասցեներով և բազմաթիվ լեզուների բառերով: Հիմա նա աշխարհի բոլոր լեզուներով կարող էր ասել՝ խաղաղություն և եղբայրություն:

Անցան ճամբարային ուրախ օրերը: Անցան, բայց չմոռացվեցին. եղբայրությունը չի մոռացվում...

Արայիկն իր ճամբարային ընկեր՝ գերմանացի Ֆրանցից նոր նամակ է ստացել: Պետք է պատասխանել: Ֆրանցը շատ է ուրախացել Արայիկի նամակի համար, որ կարդացել է իր ընկերներին, հորն ու մորը, որոնք սրտանց բարևում են իրեն ու իր ծնողներին: Ֆրանցը գրում է նաև, որ Արայիկի նամակներից այնքան շատ բան գիտե արդեն Հայաստանի ու հայերի մասին և այնքան ջերմ է սիրում, որ երբ մեծանա, անպայման կայցելի Սովետական Հայաստան: Ֆրանցը շատ է ուրախացել հատկապես հայ գրերի ստեղծող Մեսրոպ Մաշտոցի դիմանկարով նամականիշի համար: Ահա թե ինչ է գրում այդ մասին.

«Սիրելի՛ Արայիկ, Մաշտոցի նկարով նամականիշը ես կպահեմ որպես իմ հավաքածուի ամենաթանկարժեք զարդերից մեկը: Դու հպարտանում ես, որ քո հայրենակիցը այդ հին և խավար դարում լույս ու գիտություն է տարածել: Դու իրավացի ես: Ես էլ հպարտանում եմ մեր հանճարեղ Գուտենբերգով: Շատ եմ խնդրում, որ ուղարկես նաև Մաշտոցի նկարը. ես այն կկախեմ գրասեղանիս դիմաց, Գուտենբերգի նկարի մոտ: Այդ երկու մեծ գիտնականները թող լինեն մեր բարեկամության խորհրդանիշը:

Սիրելի՛ Արայիկ, երբեք չեմ մոռանա քո սովորեցրած հայերեն սքանչելի երգը՝ «Ծիծեռնակը»: Միշտ երգելու եմ այն և հիշելու եմ քեզ, քո Երևանն ու աննման Սևանը: Միշտ հիշելու եմ, որ բարեկամներ ունեմ հեռավոր Հայաստանում:

Քո անկեղծ ընկեր՝ Ֆրանց»:

Արայիկը երջանիկ զգաց իրեն և սկսեց գրել պատասխան նամակը.

«Սիրելի Ֆրանց, թանկագին ընկեր...

*ՍԱՐԳԻՍ ՑԱՓՈՒՉՅԱՆ*





# Պատանի շախմատիստի ԴՊՐՈՑ

## դասավանդում է աշխարհի չեմպիոն ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

Շախմատային պարտիայի խաղի ելքն է՝ մատ, պատ, ոչ-ոքի, հավերժական շախ: Հակառակորդի արքային մատ հայտարարելով պարտիան ավարտվում է: Սակայն մրցակիցներից որևէ մեկին ոչ միշտ է հաջողվում ցանկացած ելքի հասնել:

Եթե շախի տակ չգտնվող արքան խաղի կանոններով թույլ տրված ոչ մի քայլ չունի, ապա նման «պատ» անվանվող դրությունը հաշվվում է ոչ-ոքի: Պատ ստացողը տարված չի համարվում, որովհետև պարտված է համարվում նա, ով մատ է ստանում, իսկ մատի պարտադիր պայմանն է հաշվվում արքայի դիրքը շախի տակ, որը տվյալ դեպքում չկա:




Այս դրության մեջ քայլը սևերինն է: Նրանց արքան շարժվել չի կարող, որովհետև ամեն մի քայլի դեպքում նա կլինի սպառնալիքի տակ: Առկա է պատը՝ ոչ-ոքի: Սակայն եթե տվյալ դրության մեջ քայլը պատկանի սպիտակներին, ապա նրանք Թb7 և Թd8 քայլերով հակառակորդին կհայտարարեն շախ և մատ: Շախմատում լինում են դեպքեր, երբ հակառակորդներից մեկը հետապնդում է մրցակցի արքային՝ հայտարարելով շախեր, բայց ի վիճակի չէ վճռական հարված հասցնել, այսինքն մատ անել: Տվյալ դեպքում «հավերժական շախ» է՝ ոչ-ոքի:




Այս դրության մեջ սպիտակները մեկ ավել ֆիգուր ունեն և թվում է, թե նրանք կարող են հաջողության հասնել: Բացի դրանից, քայլի հերթը նրանցն է: Սակայն ուշադիր նայենք: Սպիտակների բոլոր ուժերը հեռու են գտնվում իրենց արքայից, որին մատ է սպառնում. (ինքներդ գիտեք, ինչ եղանակով): Սպիտակներին փրկում է այսպիսի շարունակությունը՝ Թa6 — b6: Սև արքանստիպված է նահանջել c8 կամ a8: Թագուհին a6 է վերադառնում՝ կրկին հայտարարելով շախ: Սև արքան վերստին պետք է նահանջի: Այդ ժամանակ հետևում է արդեն ծանոթ շախը թագուհով և այլն: Հավերժական շախի հետևանքով խաղը ճանաչվում է ոչ-ոքի:

Խաղը համարվում է ոչ-ոքի ավարտված նաև հետևյալ դեպքերում.

Եթե մրցակիցներից մեկը ի վիճակի չէ հաղթանակի հասնել, ասենք, ուժեղ կողմին մնացել են ձին ու արքան հակառակորդի միայնակ արքայի դեմ,

Եթե միևնույն դիրքը կրկնվում է երեք անգամ,

Եթե վերջին 50 քայլի ընթացքում խաղահարթակի վրա տեղի չեն ունեցել հետևյալ փոփոխությունները. ոչ մի զինվոր կամ ֆիգուր չի վերցվել, կամ ոչ մի զինվոր չի շարժվել:

* * *

Այժմ, երբ մենք արդեն գիտենք, թե ինչպես են քայլում շախմատային ֆիգուրները, ինչպես են հայտարարվում շախը և մատը, ծանոթ ենք ուժերի հավասարության՝ ոչ-ոքիների տարբեր եղանակների հետ, ժամանակն է անցնել շախմատի ըստրատեգիայի և տակտիկայի ուսումնասիրությանը: Սակայն նախապես լրացնենք մեր շախմատային գրագիտությունը:

Շախմատային գրականության մեջ կիրառվում է շախմատի քայլերի գրառման երկու ձև: Եթե նշվում է այդ դաշտը, որի վրա ֆիգուրը կանգնում է և այն դաշտը, ուր նա գնում է՝ նման գրառումը կոչվում է լ ր ի վ  ն շ ա ն ա գ ր ու թ յ ու ն: Օրինակ 1. Ձg1—f3: Ֆիգուրն արտահայ-

տող տառից առաջ գրված թիվը նշանակում է քայլի հերթական համարը, հաշված սկզբնական դիրքից, եթե պարտիան բերվում է ամբողջությամբ կամ դիագրամում պատկերված դիրքից, եթե բերվում է շախմատային պարտիայի միայն մի մասը: Իսկ եթե նշվում է միայն այն դաշտը, ուր գնում է ֆիգուրը, նման գրառումը կոչվում է համառոտ նշանագրություն: Վերոհիշյալ քայլը համառոտ նշանագրության դեպքում կգրվի 1. Ձf3:

Միևնույն դաշտը նույնանման ֆիգուրներով գրավելու հնարավորության դեպքում լրացուցիչ նշվում է գիծը կամ հորիզոնականը, որտեղից ֆիգուրը գնացել է: Օրինակ, եթե g5 դաշտի վրա կարող է գնալ e4 կամ h7 դաշտի վրա գտնվող ձին, ապա գրվում է Ձeg5 կամ Ձhg5: Այն դեպքում, եթե մի ձին e4-ի վրա է, իսկ մյուսը՝ e6-ի, այսինքն ֆիգուրները գտնվում են միևնույն ուղղաձիգի վրա, ճիշտ գրառումը կլինի՝ Ձ4g5 կամ Ձ6g5:

Երկու ձևի գրառումների համար ընդհանուր են հետևյալ նըշումները՝

Վերցում՝:
Շախ՝ +
Մատ՝ ×
Կարճ փոխատեղում՝ 0—0
Երկար փոխատեղում՝ 0—0—0

## ՄԵՐ ԽՆԴԻՐԸ

Օգտվելով մեզ արդեն ծանոթ խաղի կանոններից և շախմատային նշանագրությունից՝ մենք անցնում ենք խաղի ստրատեգիայի և տակտիկայի ուսումնասիրությանը: Նախ ծանոթանանք հիմունքների հետ, ապա՝ քայլ առ քայլ խորանանք շախմատի բարդությունների մեջ:

Ինչպե՞ս օգտագործել նյութական գերակշռությունը հաղթանակի հասնելու համար: Սկզբում քննարկենք մի այնպիսի դեպք, երբ նախորդ պայքարի հետևանքով հակառակորդներից մեկի նավակն ու արքան մնացել են մրցակցի միայնակ արքայի դեմ:




Հաղթանակի հասնելու համար սպիտակները պետք է մատ հայտարարեն սև արքային: Դրա համար նրանք պետք է խաղան այնպես, որ նրանց ֆիգուրները գործեն համերաշխ: Շախմատ խաղացողը պետք է հիշի հայկական առածը՝ «Մի ձեռքը ծափ չի տա»: Որքան համերաշխ ու համաձայնեցված գործեն ֆիգուրները, այնքան մեծ կլինի հաղթանակի հնարավորությունը:

Ուժերի տվյալ հարաբերության դեպքում սև արքային մատ անելու համար անհրաժեշտ է նրան «քշել» խաղատախտակի անկյունը կամ եզրի գիծը: Դրա համար սպիտակների արքան պետք է մոտենա սև արքային, որն իր հերթին պետք է աշխատի չհեռանալ խաղատախտակի կենտրոնից: Սպիտակները պետք է ձգտեն հասնելու այսպիսի դիրքի.




Այս դիրքը ապահովում է հասնել մատային դրության, որի համար, ինչպես արդեն հայտնի է, սև արքային պետք է «քշել» տախտակի եզրը:




Ծանոթացեք այս դիագրամներում պատկերված երկու մատային դիրքերի հետ: Արքային «քշելով» խաղատախտակի եզրը, անհրաժեշտ է նրան այնուհետև ետ վանել անկյունը: Ամեն մի քայլից հետո, սպիտակ արքայի տրամադրության տակ ավելի քիչ տարածություն է մնում, մինչև որ ստեղծվում է անելանելի վիճակ:




Դիմադրություն ցույց տալով, արքան կամավոր չպետք է թողնի տախտակի կենտրոնը: Սակայն ուժեղ կողմը միշտ կարող է խաղը հանգեցնել նման դիրքի: Իսկ այստեղ արդեն դժվար չէ արքային ետ վանել:

Խաղալով Աd6, այստեղ սպիտակները սպասում են հակառակորդի պատասխան քայլին:

եթե սևերն այժմ կարողանային քայլ բաց թողնել, ապա սպիտակները ոչնչի չէին հասնի: Սակայն շախմատում քայլի իրավունքը միաժամանակ և պարտականություն է: Քայլը բաց թողնել չի կարելի: Սակայն, եթե քայլ կատարելու պարտականությունը անշահավետության է հանգեցնում, դա կոչվում է «ցուգցվանգ»:

Աb4 քայլին հետևում է Նc5, որից հետո «C» գիծը սևերի համար անմատչելի է դառնում: Իսկ եթե Աc3 են շարունակում, ապա սպիտակներն են խաղում Աc5, այնուհետև Նd4 և գրավում չորրորդ հորիզոնականը:

Հետզհետե արքային ետ վանելով, խաղը պետք է հանգեցվի ներքոհիշյալ կամ նույնանման դրությանը, անկախ այն բանից, թե ետ վանումը եղել է տախտակի եզրի հորիզոնականի կամ ուղղաձիգի վրա:




Ապա հետևում է՝ 1... Աf8 2. Աd6 Աe8 3. Աe6 Աf8 4. Աf6 Աe8 5. Նd1:

Ստեղծվել է ցուգցվանգի դրություն: Սևերը պետք է խաղան Աf8, որից հետո նրանք մատ են ստանում՝ Նa8×:

Տ. Պետրոսյան

ՉԳԻՏԵՍ՝ ԻՄԱՑԻՐ

## ՄԵՂՈՒՆԵՐԻ ԷԼԵԿՏՐԱԿԱՆ ԿԻԹ



Մեղվի թույնը համարվում է կարևոր դեղամիջոց: Բայց այն հեշտությամբ չի ձեռք բերվում: Մինչև այժմ մի քանի գրամ մեղվի թույն ստանալու համար անպայման պետք էր սպանել բազմաթիվ մեղուների: Սակայն վերջերս Ամերիկայի Մոնտանա նահանգում ստեղծել են էլեկտրական հարմարանք, որի միջոցով հաջողվում է մեղվից թույն ստանալ, առանց վնասելու նրան: Արհեստական կիթի այդ եղանակը պիտանի է ոչ միայն մեղուների, այլև իշամեղուների և պիծակների համար, որոնցից ստացվում են ավելի թանկարժեք նյութեր: Բավական է ազոտի ենթօքսիդի մի փոքր ամպիկ, որպեսզի միջատներն ընկնեն նարկոզային դրության մեջ: Ալյումինե նրբաթիթեղի փոքրիկ գոտին մեղվի գլուխը խոնարհում է ներքև, և էլեկտրական թույլ հոսանքի ազդեցության տակ կաթում է թույնը:

## ԼԵՂԱԿԸ՝ ԴԵՂՈՐԱՅՔ

Քենտուկի նահանգի (ԱՄՆ) արևելյան լեռներում ապրում են «կապույտ» մարդիկ: Դեմքի կապույտ գույնը նշան է մի հիվանդության, որը հայտնի է ցիանոզոմ անունով: Քենտուկցիներն այդ հիվանդությունը ժառանգել են իրենց նախահորից՝ մի նորաբնակ ֆրանսիացուց, որն այստեղ հողամաս էր ստացել 1820 թվականին: Կամաց-կամաց այդ հիվանդությունը տարածվեց նրա հարազատների շրջանում և անցավ սերնդից սերունդ:



«Կապույտ» մարդկանց օրգանիզմում եղած հեմոգլոբինի 20—25 տոկոսը փոխարինված է մետահեմոգլոբինով: Բժիշկ Մ. Քավենը հիվանդների արյան մեջ սրսկելով լվացքի սովորական լեղակ, մետահեմոգլոբինը վերածում է հեմոգլոբինի, և «կապույտ» մարդիկ ստանում են սովորական գույն:




## ԹՈՒՂԹԸ ԲՈՒԺՎՈՒՄ Է... ՎԻՏԱՄԻՆՆԵՐՈՎ

Պարզվում է, որ վիտամինները օգտակար են ոչ միայն կենդանի օրգանիզմներին: Այժմ վիտամիններով են բուժում նաև հնագույն ձեռագրերն ու թղթերը: Բուժման այդ եղանակը հայտնագործել է իտալացի բիոքիմիկ Մարիո Պինցուտին:

# ՀԻԴՐՈՊՈՆԻԿԱՆ ԲՈԼՈՐԻ ՀԱՄԱՐ

«Պոնիկա» բառը հունարեն նշանակում է «աշխատանք», իսկ «հիդրոպոնիկա»՝ «ջրի աշխատանք»։

Մեծ է հիդրոպոնիկայի նշանակությունը։ Բույսերի աճեցման այդ հիանալի եղանակը արդեն կիրառվում է Մերձմոսկովյան, Հայաստանի, Ուկրաինայի և Լատվիայի կոլտնտեսություններում ու սովխոզներում։

Բայց հիդրոպոնիկայով հետաքրքրվում են ոչ միայն գյուղատնտեսության աշխատողները, այլև շատ պատանի բնասերներ։

Իսկ կարելի՞ է արդյոք այդ մեթոդը կիրառել թե՛ սարքավորված ջերմոցներում և թե՛ տանը, այգում, դպրոցում։ Այո՛, կարելի է։

Բանջարեղենի ու ծաղիկների աճեցման այդ նոր եղանակը ավելի արդյունավետ է լինում, երբ հողը փոխարինում են գետաքարով կամ մանրախճով։ Դրա համար անհրաժեշտ է պատրաստել լայն արկղ, որի չափսերը մոտավորապես պետք է լինեն 75×30 սմ, իսկ բարձրությունը՝ 15 սմ։ Արկղը կարելի է պատրաստել պլաստմասսայից, տախտակից, թիթեղից։ Բայց, քանի որ սննդարար լուծույթը քայքայում է մետաղը և ներծծվում փայտի մեջ, դրա համար լավ կլինի արկղի ներսը պատել ձյութով կամ ասֆալտով։ Վատ չեն նաև սինթետիկ թաղանթը, պլաստիկ շերտերը, պոլիէթիլային մոմլաթը։

Արկղը լցնում են խնամքով լվացած, ջարդած աղյուսով, մանրախճով կամ մանր գետաքարով, և այնտեղ տնկում բույսերը։

Իսկ ինչպե՞ս են պատրաստում սննդարար լուծույթը։ Լուծույթը բաղկացած է 2 մասից. հիմնական սնունդից և միկրոէլեմենտներ պարունակող հեղուկից։ Դրանք պատրաստում և պահում են առանձին-առանձին, իսկ օգտագործելուց առաջ խառնում են իրար (այստեղ բերված աղյուսակում 1 լիտր լուծույթին ավելացնում են 1 խոր. սմ միկրոէլեմենտ պարունակող լուծույթ)։ Ավելի օգտակար է սննդարար լուծույթը պատրաստել նախապես։

Հիմնական սննդարար լուծույթ

(10 լիտր ջրի համար՝ գրամներով)

| | |
|---|---|
| Մագնեզիումի սուլֆատ | 3,2 |
| Ամոնիակային սելիտրա | 2,4 |
| Կալիումական սելիտրա | 5,6 |
| Սուպերֆոսֆատ | 4,8 |

Միկրոէլեմենտներ պարունակող լուծույթ

(1 լիտր ջրին՝ գրամներով)

| | |
|---|---|
| Բորաթթու | 0,8 |
| Ցինկի սուլֆատ | 0,1 |
| Երկաթի սուլֆատ | 6,3 |
| Ծծմբական թթու (խտացված) | 5 խոր. սմ |
| Մանգանի սուլֆատ | 0,6 |
| Ամոնիումի մոլիբդատ | 0,1 |
| Կոբալտի նիտրատ | 0,1 |
| Պղնձի սուլֆատ | 0,1 |

Անհրաժեշտ է հիշել, որ ծծմբական թթուն լուծելու ժամանակ թթուն են լցնում ջրի մեջ և ոչ թե հակառակը։ Այնուհետև, ըստ ցուցակի պետք է խստորեն պահպանել նյութերի լուծման հաջորդական կարգը։ Չի կարելի ավելացնել նոր նյութ, եթե նախկինը լրիվ չի լուծվել։ Միաժամանակ չպետք է մոռանալ, որ բոլոր գործողությունները պետք է կատարել ապակյա կամ արծնապատված (էմալապատ) ամանների մեջ։ Լուծույթներն անհրաժեշտ է պահել մթության մեջ։

Իսկ ինչպե՞ս աճեցնել բույսերը հիդրոպոնիկ եղանակով։ Շատ պարզ. բույսերը սիստեմատիկաբար, օրական 2-3 անգամ, պետք է ոռոգել լուծույթով։ Լուծույթի ավելցուկը հոսում է հատուկ ընդունարանի մեջ, որը ամրացված է արկղի պատին։ Հավաքված լուծույթը նորից կարելի է օգտագործել։




Բայց քանի որ բոլորը չեն կարող ձեռք բերել քիմիական նյութեր, քիմիական ձեռնարկություններն սկսել են թողարկել պատրաստի խառնուրդներ։ Լատվիայի Սիգուլդա քաղաքում արդեն մի քանի տարի է, ինչ արտադրում են հատուկ հաբեր՝ մեկ և տասը լիտր լուծույթ պատրաստելու համար։ Այդ շնորհակալ գործը կատարել է հիդրոպոնիկայի էնտուզիաստ, լատվիացի ագրոնոմ Յու. Աբելեն, որի անունով էլ կոչվում են հաբերը։ Բացի դրանից Աբելեն պատրաստել է նաև մի սարք, որի միջոցով հեշտությամբ կարելի է որոշել սննդարար լուծույթի, հողի, ջրի թթվությունը։ Իսկ դա հիդրոպոնիկայի համար շատ կարևոր է։



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

**Այս համարի հետ տրվում է անվճար հավելված՝ հոկտեմբերիկների համար**

# *Հովհաննես Հովհաննիսյան*

Ճեմարանի միջանցքում լռություն է։ Հնչում է զանգը։ Աշակերտները դուրս են գալիս դասասենյակներից։ Լռությունը կորչում է ճեմարանի սաների ուրախ ու աշխույժ աղմուկի մեջ։ Տասնըչորս-տասնհինգ տարեկան մի պատանի անհամարձակ մոտենում է հայոց լեզվի ուսուցչին, որ մտազբաղ քայլում է միջանցքի երկարությամբ։

— Ներեցեք, պարոն, եթե կարելի է... կարդացեք, խնդրում եմ։

Ուսուցիչը շրջվում է, նայում, ապա վերցնում է իրեն մեկնած բանաստեղծությունը և սիրալիր ասում.

— Գնանք պարտեզ։

Եվ գնում են ճեմարանի պարտեզի այն ծառուղին, որ «բանաստեղծ» աշակերտների ժողովումների և երազանքների վայրն էր, ուր հաճախ զբոսնում էր Կոմիտասը և ստեղծում իր սրտահույզ մեղեդիները։

Ուսուցիչը կարդում վերջացնում է և, քիչ լռելուց հետո, ձեռքը մտերմաբար դնում է աշակերտի ուսին ու ասում.

— Ավետի՛ք, այս գրածներդ երևակայություն են։ Գրիր քո զգացած բաների մասին։ Երևում է վաղուց ես գրում... Բավական սահուն ես գրել, բայց...

— Այո՛, վաղուց եմ գրում, մի քանի տարի է։

— Շատ լավ, շարունակի՛ր գրել։ Մեկ-մեկ ինձ ցույց տուր



գրածներդ, շատ կարդա, հայերեն լավ սովորիր։

Դա 1890 թվականի գարնանն էր։ Ուսուցիչը Էջմիածնի Գևորգյան ճեմարանի աշակերտների սիրելի և անվանի բանաստեղծ Հովհաննես Հովհաննիսյանն էր, որի սրտառուչ խոսքերի և բարի խորհուրդների ազդեցության


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Ռ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։*

*ՎՖ 07722։ Պատվեր՝ 793։ Տպաքանակ՝ 17 500։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 29/V 1964 թ.։ ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։*

Գինը 20 կ.




«ՊԻՈՆԵՐԻ» ՀԱՎԵԼՎԱԾ
ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԾԻԾԵՌՆԱԿ

*Սիրե՛ք, մանուկնե՛ր, ամեն ժամանակ*
*Խելքի ու մտքի այս նոր ձեռնարկը.*
*Ձեզ չի պատմելու ո՛չ մի ծիծեռնակ,*
*Ինչ որ պատմում է այս «Ծիծեռնակը»։*

## Ինչ կդառնամ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Թղթին իջնեմ,
Տառ կդառնամ.
Ես թանաքն եմ,
Բառ կդառնամ:
Գիրք ու նկար,
Երգ ու նամակ,
Ես կդառնամ՝
Ինչ կամենաք:
Մաքուր, սիրուն
Տետրակներում
Բառ կդառնամ,
Երգ կդառնամ,
Իսկ ծույլերի,
Փնթիների
Քթի վրա
Ներկ կդառնամ:



## ԻՄ ՈՍԿԵԳՈՒՅՆ ՁԿՆԻԿԸ



ԿԼԱՐԱ ԹԵՐՁՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Ես ու մայրիկը անցնում ենք դիմացի մայթը. դա մեր գաղտնիքն է, մտնում ենք այն խանութը, ուր մեծ ակվարիումների մեջ լողում են փոքր ձկներ: Նրանք այնքան շատ են, հաշվել չի լինի, բայց ես անմիջապես գտնում եմ իմ ձկնիկին, իսկ մայրիկը՝ իրենը: Մայրիկի ձկնիկը կարմիր է, երկար, թափանցիկ պոչով, իսկ իմը ոսկեգույն է, սովորական պոչով, բայց այնքան արագ է լողում, որ չեմ հասցնում նայել, մեկ այս անկյունում է, մեկ՝ այն:

— Ես գիտեմ, թե դու ինչու ես ոսկեգույնին սիրում, — ասում է մայրիկը, — նա էլ քեզ պես անհանգիստ է, հա շտապում է, թե ուր, չգիտեմ:

— Բայց ես չեմ շտապում, հանգիստ կանգնած եմ, — ասում եմ ու կարմրում:

Ինչի՞ց է, որ մայրիկը ամեն ինչ հասկանում է. մտքով ես ձկնիկիս հետ բոլոր պտույտները կատարում եմ, նրա հետ սլանում:

— Գնանք, — ասում է մայրիկը:

— Գնանք,— ասում եմ ես, և երկուսով դուրս ենք գալիս խանութից։

— Մեզանից հետո ի՞նչ են անում ձկները։

— Լողում են, ուտում, քնում։ Չէ՞ որ նրանց համար հատուկ կամար են պատրաստել կարմիր ու սպիտակ խխունջներից. դա նրանց տունն է։ Հատակին լցրած ավազը, խխունջներն ու բույսերը նրանց հիշեցնում են ծովը, որ հեռու, շա՜տ հեռու է մնացել։

— Ձկները տխրում են։

— Ո՛չ, ծովում նրանց ոչ ոք չի տեսնում, իսկ այստեղ նրանք շարունակ շրջապատված են երեխաներով, որոնք կերակրում են նրանց, հոգ տանում։

* * *

Այսօր մանկապարտեզից հայրիկն է ինձ տուն տանում։

— Գնանք ձկների խանութը,— խնդրում եմ ես։

Իսկ նա ժպտում է ու ասում.

— Արագ քայլիր։

Շտապում է. գո՞րծ ունի, թե... Ուղղակի հայրիկը ձկներին չի սիրում։ Ես նրան ոչինչ չեմ ասում, մտքումս խոսում եմ ոսկեգույնի հետ.

— Ո՞նց ես, լա՞վ, եկ լողանք հեռո՜ւ։

Ձկնիկը ձայն չի հանում, բայց համաձայն է։

— Լողա՞նք։

Նա շատ ցածր է խոսում, դրա համար էլ չեմ լսում։

— Ուզո՞ւմ ես՝ քեզ սովորեցնեմ օդում մեռյալ օղակ անել։

Ոսկեգույնը ինձ լսում է, լսում, հետո դուրս է ցատկում, օդում պտույտ կատարում ու նորից սուզվում ջրի մեջ։

— Կեցցե՜ս,— ասում եմ,— և ուզում եմ շոյել ոսկեգույնին։

— Ինչո՞ւ ես ժպտում,— հարցնում է հայրիկը։

— Ձկները տոնածառի խաղալիքի պես փխրուն են, շոյել չի լինի. փշուր—փշուր կլինեն։

— Արագ քայլիր, շուտ տուն հասնենք,— ասում է հայրիկը։

Երևի մի բան պատահել է։ Դուռը բաց է անում մայրիկը, նա էլ է ժպտում, անպայման մի բան կա։ Վազում եմ սենյակ, նայում աջ, ձախ... Սեղանի վրա դրված է մի մեծ ակվարիում, որի մեջ լողում են իմ և մայրիկի ձկները։ Ոսկեգույնը իմ կողմն է գալիս։

— Ուռա՛,— բղավում եմ,— ինձ ճանաչեց։

Մայրիկն ասում է, որ ակվարիումը



հայրիկն է մեզ համար գնել։ Ուրեմն նա էլ է ձկներին սիրում, միայն ձայն չի հանել, իսկ ես ի՜նչ եմ մտածել։ Ի՜նչ լավ

է, երեքով կխոսենք ձկների հետ։

— Հիմա եկ ճաշենք, — ասում է մայրիկը։

— Իսկ ձկնե՞րը։

— Հայրիկն արդեն նրանց կերակրել է, վաղվանից դու կկերակրես։

Ուտում եմ, բայց աչքս չեմ կարողանում հեռացնել ակվարիումից։ Կարմիր ձկնիկը հանգստանում է, իսկ ոսկեգույնին հոգնել չկա, անվերջ լողում է։ Ես նրան կսովորեցնեմ պտույտներ կատարել, ձևավոր լողալ։ Հայրիկը, որ դա տեսնի, ուրիշ ձկներ էլ կգնի։ Նրանք բոլորը մեծ շրջան կկազմեն ու կլողան, հետո կշարվեն, աստղ կդառնան, հետո իրար կմոտենան, ծովի հատակում բացված ծաղկի կնմանվեն, երբ ասեմ՝ ցրվե՛լ, տարբեր կողմեր կլողան և կթվա, որ մե՛ծ ալիքը աջ ու ձախ ցրեց ծաղկի թերթիկները։ Ինչե՞ր ասես, որ չեն անի ձկները, ես կլողամ նրանց հետ ու կզվարճացնեմ նրանց։

Մի կերպ վերջացնում եմ ճաշս ու վազում ձկներիս մոտ։ Կարմիրը դեռ հանգստանում է, իսկ ոսկեգույնը ավելի է աշխուժացել։ Որքա՜ն եմ ուզում, որ հայրիկը մեր սենյակը ջրավազան դարձնի։ Պառկում եմ գորգի վրա ու ոտքերս միացնելով՝ ձկան պոչի պես շարժում, իսկ ձեռքե՞րս, ձեռքերս էլ եմ միացնում ու ալիքաձև շարժում։ Ես ու ոսկեգույնը լողում ենք։ Բայց արդեն հասել եմ անկյունին, պետք է թեքվել։ Ոչ, սենյակի չափ ջրավազանը ինձ համար փոքր է, ինձ ծով է պետք, իսկ ձկնիկի՞ն։ Մայրիկն ասաց, որ ծովում ձկներին ոչ ոք չի տեսնում, իսկ այստեղ երեխաները սիրում են նրանց, խնամում, դրա համար էլ չեն տխրում։ Թույց մայրիկն այդպես ասաց, որ ես չտխրեմ։ Ձկնիկը սուս ու փուս անկյունից-անկյուն է լողում, բայց ես գիտեմ, որ նա էլ անկյուն չի սիրում, նա ծով է երազում։




ԷԴՈՒԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ

Կարմիր, կանաչ, կապուտակ,
Սիրուն, կլոր իմ գնդա՛կ,
Մի քիչ ինձ մոտ դու մնա՛,
Այդպես հեռու մի՛ գնա:

Ես կանչում եմ, հա՜ կանչում,
Իսկ դու հեռու ես փախչում,
Բողարի պես մեր բարի,
Երբ կանչում եմ՝ շու՛տ արի:






Թիթե՛ռ, թիթե՛ռ ալյուրոտ,
Ի՞նչ ես շրջում դաշտ, արոտ,
Մեր բա՛կն արի դու այսօր,
Մեկտեղ գնանք սար ու ձոր,
Մեկտեղ ուրախ մենք շրջենք,
Երեկոյան տուն թռչենք:

# Ընկերները

ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

— Իմ անունը Ալիկ է,— փոքրիկ աղջկա ձեռքը բռնելով՝ ասաց տղան։

— Իմ անունը Լալիկ է,— փոքրիկ տղայի ձեռքը բռնելով՝ ասաց աղջիկը։

Այդ նրանք առաջին անգամ էին հանդիպել իրար։

Ուսուցչուհին բռնել էր Ալիկի ձեռքից, բերել էր Լալիկի մոտ և ասել.

— Ահա քո զույգը, բռնիր նրա ձեռքից ու կանգնիր շարքի։

Լալան հոգնել էր, անվերջ քաշում էր ձեռքը, իսկ Ալիկը պինդ բռնել էր նրա ձեռքը ու բաց չէր թողնում.

— Ընկեր Նունեն ասաց, որ ձեռք-ձեռքի բռնած կանգնենք։

Հնչեց զանգը... առաջին զանգը։

Առաջին դասարանցիները շարքերով բարձրացան երկրորդ հարկ։ Շարքի առջևից, ձեռք-ձեռքի բռնած, գնում էին Ալիկն ու Լալիկը։

— Նստեցեք այստե՛ղ,— ասաց ընկեր Նունեն։

Եվ Ալիկն ու Լալիկը նստեցին մի նստարանի վրա։

Ամեն առավոտ մեծ փողոցի անկյունում իրար էին հանդիպում Ալիկն ու Լալիկը և, իրար ձեռք բռնելով, վազում էին դպրոց։

Հետո Լալիկը նոր ընկերուհի էլ ունեցավ՝ անունը Կարինե, ու դրանից հետո Ալիկը, Լալիկն ու Կարինեն միշտ միասին էին լինում։

Մի օր դպրոցում տղաները կռվեցին Ալիկի հետ և ասացին.

— Դու աղջիկ ես, աղջիկների հետ ես խաղում...

Մյուս օրը Ալիկը դպրոց գնալիս էլ չսպասեց Լալիկին ու Կարինեին, մենակ գնաց։ Նա ճանապարհին միացավ տղաների մի մեծ խմբի։



Լալիկն ու Կարինեն գնում էին նրանց հետևից։

Տղաները փողոցով վազող շանը բռնեցին, վզից աղյուս կապեցին։ Շունը փոքրիկ էր, թույլ ոտքերը ծռմռելով աշխատում էր ծանրությունից ազատվել, բայց չէր կարողանում։

Տղաները բարձր-բարձր ծիծաղում էին...

Ճանապարհով անցնող քեռիներից մեկը շնիկին ազատեց։

Առաջին դասից հետո ընկեր Նունեն

ամեն ինչ լսեց։ Եվ Ալիկի վրա խիստ բարկացավ...

Բայց Ալիկը չտխրեց։ Դասամիջոցին վազվզում էր չար տղաների հետ ու քաշում էր աղջիկների մազերից։

Դասերից հետո էլ Ալիկը չէր սպասում Լալիկին ու Կարինեին, վերցնում էր պայուսակն ու շվշվացնելով վազում դուրս...

Մի քանի օրում այնպես փոխվեց Ալիկը, որ երբ Լալիկը նրանից մի ծայր խնդրեց, նա մերժեց։ Իսկ դասերից հետո, դպրոցի շքադռնից դուրս գալիս, այնպես քաշեց Լալիկի մազահյուսքից, որ արցունքի երկու կաթիլ ընկան նրա աչքերից։

Մի քանի օր անց, ահա թե ինչ պատահեց։

Դասերը վերջացել էին. բոլորը տուն էին վերադառնում։ Ալիկը ուզում էր հասնել տղաների հետևից։

Նրա հետևից գնում էին Լալիկն ու Կարինեն։

Հանկարծ մի տղա կանգնեցրեց Ալիկին, հետո մոտեցան ուրիշ երկու տղաներ։ Առաջին մոտեցող տղան ասաց.

— Ասում են, դո՛ւ ես շանս վզից քար կապել...

Ալիկն ուզում էր նրանց համոզել, որ ինքը չի եղել, որ մենակ ինքը չի եղել, չի իմացել, որ... բայց տղաները այլևս չէին լսում նրան։ Երեքն էլ պայուսակները դրին մայթի վրա ու սկսեցին խփել Ալիկին։

Լալիկն ու Կարինեն կանգնեցին, ափսոս, իրենց դասարանից ոչ ոք չի երևում։ Աղջիկներն ուզում էին օգնել Ալիկին, բայց տղաները ուժեղ էին, կարող էին իրենց էլ ծեծել. ի՞նչ անել։ Նրանք երկար չմտածեցին, արագ վազեցին ու վերցրին այդ տղաների պայուսակներն ու երեսները դեպի դպրոցը դարձնելով՝ փախան։

Տղաներն իսկույն բաց թողին Ալիկին ու վազեցին պայուսակների հետևից։ Նրանք երևի գլխի ընկան, որ աղջիկները կարող են նրանց պայուսակները տանել դպրոց, իսկ այնտեղ անմիջապես կիմանային, թե ովքեր են փողոցում անկարգություն անում։

Աղջիկները չսպասեցին, որ տղաները հասնեին իրենց, նրանք ճանապարհի կեսին վայր գցեցին պայուսակներն ու փախան...

Աղջիկները վազելով վերադարձան...

Նրանք քայլեցին լուռ, իսկ մյուս օրը վաղ առավոտյան, մեծ փողոցի անկյունում, Ալիկը կանգնած սպասում էր աղջիկներին։

Դրանից հետո ամեն օր՝ Ալիկը, Լալիկն ու Կարինեն միշտ միասին էին դպրոց գնում։



# ԱԼԻԿՆ ՈՒ ՏԱՏԻԿԸ



ԼԵՎՈՆ ՂԱԶԱՐՅԱՆ

— Տատի՛, բակում քեզ համար
Տուն եմ սարքել շատ հարմար:
Տատը նայեց. — Ա՛յ քեզ տուն,
Հազիվ մտնի մեր կատուն:
— Ոչի՛նչ, տատի՛, մեծանամ,
Տուն կշինեմ իսկական:



# ԾԻՏԻԿԻ ԵՐԱԶԸ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ

Ծիտիկը մի օր
Տեսավ երազում,
Որ մի սև կատու
Իր կողմն է վազում:



Խեղճը սարսափից,
Իրեն թափ տվեց
Ու ընկավ գետնին,
Թևը ջարդվեց:

Ծիտիկը լացեց
Թևիկը կախած
Ու տխուր-տրտում
Ինքն իրեն ասաց.

— Երազը ի՞նչ է,
Որ հավատացի
Ու ներքև ընկա,
Թևս ջարդեցի:

Նկ. ՍԵՅՐԱՆ ԽԱՉԼԱՄԱՋՅԱՆԻ





# ԵՐԳՉՈՒՀԻՆ

Մայիսյան մի գեղեցիկ առավոտ էր։ Ծաղկել էին ծաղիկներն ու ծառերը։ Թռչունները պճնվել էին շքեղ փետուրներով։ Տոն էր, և թևավորները պետք է համերգ տային, այսինքն՝ ծլվլային։

Ագռավը դիրիժորն էր։ Գեղգեղում էին ֆլեյտան ու կլառնետը, ամենուրեք տարածվել էր թմբուկի ու շեփորի ձայնը։

— Բայց ո՞վ պետք է երգի, ո՞վ է լինելու մեր երգիչը,— անհանգստացել էր ագռավը։

— Ե՛ս։

— Ե՛ս,— այս ու այն կողմից ծլվլում էին թռչունները և խնդրում փորձել իրենց ձայնը։

— Ծի՜վ-ծի՜վ,— սկսեց երգել երաշտահավիկը։

— Ջա՜-չա՛,— նրան ընդհատեց սարյակը։

— Ցո՜փ-ցո՜փ,— կչկչաց կարմրակատարը։

— Ցա՜փ-ցա՛վ,— ձայնը գցեց սև կեռնեխը։

Ագռավը չգիտեր ինչ աներ. չէր իմանում, թե ում տար նախապատվությունը։ Բացի դրանից, նա սաստիկ հոգնել էր. չէ՞ որ բոլոր թռչուն-





ներն էլ ուզում էին փորձել իրենց ձայնը և միմյանց հերթ չէին տալիս։

Այդ պահին մի փոքրիկ թռչնակ թռավ նստեց ծառի ճյուղին և սկսեց երգել։ Նա այնպես լավ էր դայլայլում, որ բոլորը պապանձված լսում էին։ Շատերն ուզում էին, որքան հնարավոր է, շուտ տեսնել երգչուհուն։ Եվ ինչքան զարմացան փետրավորները, երբ տեսան, որ այդ հրաշալի երգչուհին մի գորշ, փոքրիկ թռչնակ է, այնքան փոքրիկ, որ տերևների մեջ հազիվ է երևում։

— Լսո՞ւմ եք, սոխակն է երգում, նա է ամենալավ երգչուհին,—կռկռաց ագռավը,—թեև փոքր է, բայց նա է երգի արքան։

Նախանձ թռչունները թևին տվեցին ու թռան, իսկ մնացածները դեռ երկար ժամանակ լսում էին սոխակի քաղցր դայլայլը։

*Փոխադրություն գերմաներենից*

# ԻՆՉՊԵՍ Է ԼԻՆՈՒՄ ԽՌՈՎԵԼԸ

ՄԱՐՈ ՄԵՅՄԱՐՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Մի անգամ ասացի քույրիկիս.

— Արի՛ խռովենք:

— Լավ,— ասում է Նուշիկը,— խռովենք բայց ես չգիտեմ, ինչպես են խռովում:

— Ես էլ չգիտեի, բայց այսօր Սուսաննան կռվեց և խռովեց յոթերորդ դասարանցի մի տղայի հետ, նրանից սովորեցի: Ես ու դու իրար հետ չենք խոսի, երբ որ քեզ մի բան ասեմ, չես պատասխանի, լա՞վ:

— Ինչու՞ այդպես,— հարցնում է նա:

— Այնպես,— ասում եմ,— ուզում եմ իմանալ, ինչպես է լինում խռովելը:



— Այդ լավ չէ, ես միշտ ուզում եմ խոսել քեզ հետ:

— Բայց չէ՞ որ մենք պիտի խռովենք:

— Լավ,— համաձայնում է Նուշիկը:

Եվ մենք խռովում ենք: Նրա դուրս գնալուց հետո ես մտածում եմ. ինչպե՞ս են լինում խռովածները, նրանք լա՞վ մարդիկ են, թե՞... Իսկ եթե խռովածները հանկարծ խոսեն իրար հետ, ի՞նչ կլինի այն ժամանակ: Ես կարծում եմ, որ ոչինչ էլ չի լինի: Ամեն ինչ կմնա նույնը. և՛ մեր փողոցը, և՛ մեր տունը, և՛ քույրիկս ու ես: Ես իմ քույրիկին շատ եմ սիրում: Նա ինձանից փոքր է, իսկ մայրիկս միշտ ասում է, որ փոքրիկներին պետք է սիրել:

Հանկարծ լսում եմ մայրիկիս ձայնը.

— Գնա՛, Նուշի՛կ ջան, կանչիր Հովիկին:

Նուշիկն անմիջապես ներս է մտնում և.

— Հովի՛կ...— ասում է, բայց չի կարողանում շարունակել, որովհետև ես մատս դնում եմ շրթունքներիս, և դա նրան ստիպում է լռել:

Նա կիտում է հոնքերը և դուրս գնում: Ես վգում եմ, որ լավ բան չարեցի, բայց ինչ արած, չէ՞ որ մենք խռով ենք: Ես ուզում եմ կարդալ «Շունն ու կատուն», բայց չեմ կարողանում մոռանալ Նուշիկի կիտած հոնքերը: «Եթե բոլոր խռովածներն այսպես են լինում, իհարկե,դա լավ բան չէ», — մտածում եմ ես և գնում եմ Նուշիկի հետ խոսելու: Մտնում եմ մյուս սենյակը և տեսնում, որ ոչ ոք չկա: Բայց դուրս գնալիս մի ձայն եմ լսում: Նուշիկն է, բայց որտե՞ղ է թաքնվել, երևի ուզում է ինձ հետ կատակ անել: Ես նորից եմ լսում ձայնը և հասկանում եմ, որ դա գալիս է պահարանի միջից: Ինչու՞: Ես շատ եմ զարմանում, որովհետև Նուշիկը լաց լինելիս էր այնտեղ մտնում: Բացում եմ պահարանի դռնակը և տեսնում եմ, որ Նուշիկն, իսկապես, լաց է լինում: Նա արցունքոտ աչքերով նայում է ինձ և կամացուկ ասում.

— Դու ինձ հետ կխոսես, չէ՞:

— Կխոսեմ, — ասում եմ ես, — այլևս չեմ խռովի, լավ բան չէ խռովելը:

Նուշիկը ժպտում է և սրբում արցունքները: Մենք միասին գնում ենք մայրիկի մոտ՝ հարցնելու, թե արդյո՞ք բոլոր խռովածները լաց են լինում:

— Այո՛, — ասում է մայրիկը, — խռովելը լավ բան չէ: Իսկ ով որ խռովում է, նրան «խռովկան» են ասում: Ի՞նչ է, չլինի՞ դուք էլ եք խռովել:

— Ո՛չ, — ասացինք մենք, — հիմա խոսում ենք իրար հետ:

Մայրիկը ժպտաց, իսկ ես ու Նուշիկը գնացինք կարդալու «Շունն ու կատուն», որոնք մինչև հիմա չեն հաշտվել իրար հետ:



# Քաղցր գնդակը

ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Եկե՛ք, եկե՛ք, շո՛ւտ արեք,
Այս գնդակը տո՛ւն տարեք...
Ինքը՝ կլոր ու փայլուն,
Պոչիկ ունի ոլորուն:

Այս ի՞նչ գունդ է հյութալի,
Ամառ-ձմեռ՝ հաճելի.
Թե գնդակ է, ի՞նչ պոչուկ.
Պոչով գնդակ գիտե՞ք դուք...

Է՜, գնդակը այս չալիկ
Կորիզ ունի հատ-հատիկ:
Բա չիմացա՞ք, ինչ է, դուք...
Ձմերո՛ւկ է, ձմերո՛ւկ...

Շերտ-շերտ կտրեմ ու ձեզ տամ
Այս գնդակը քաղցրահամ.
Անուշ լինի, թե կերե՛ք,
Թե հյուրեր կան՝ նե՛րս բերեք:

Նկ. ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆԻ

# Շաքարե աքլորիկը



Կարենը մի փոքրիկ տղա էր։ Նա քաղցրեղեն շատ էր սիրում։

Մի օր մայրիկը շուկայից տուն եկավ ու ասաց.

— Տե՛ս, Կարեն, ինչ եմ բերել քեզ համար։

— Աքլո՜ր, շաքարե կարմիր աքլո՜ր,— տեղից վեր թռավ Կարենը և մայրիկի ձեռքից աքլորը խլեց։— Ես շաքարե աքլորիկ շա՜տ եմ սիրում, մայրիկ, դրա համար էլ սա չեմ ուտի։ Կդնեմ իմ դարակն ու կպահեմ։

Բայց Կարենն աքլորը դարակը չդրեց. նայեց, նայեց նրան ու ասաց.

— Աքլորի՛կ, աքլորի՛կ, ինչքա՜ն մեծ պոչ ունես... Ինչի՞դ է պետք այսքան մեծ պոչը։

Այս խոսքերի հետ նա աքլորիկի պոչը կերավ։

«Ա՛յ, հիմա ես իմ աքլորիկը կպահեմ»,— մտածեց նա։ Մտածեց, բայց այդպես էլ չպահեց։ Նայեց, նայեց աքլորին ու ասաց.

— Աքլորի՛կ, աքլորի՛կ, ինչքա՜ն մեծ գլուխ ունես... արի ես քո գլուխն ուտեմ։

Ասելն ու ուտելը մեկ եղավ։

— Ա՛յ, հիմա ես կպահեմ քեզ,— ասաց նա, բայց նայեց, նայեց իր շաքարե աքլորիկին ու ավելացրեց.

— Իմ փոքրի՛կ աքլորիկ, դու շատ ծիծաղելի ես դարձել, ո՛չ պոչ ունես, ո՛չ էլ գլուխ, ավելի լավ է ես քեզ ուտեմ։

Այսպես ասաց Կարենն ու կերավ իր շաքարե աքլորիկը։

# Երկու եղբայր

Կարենը Սուրիկի եղբայրն է, նրանից երկու տարի փոքր։

Երբ Սուրիկն ասում է. «Ես մրսում եմ», Կարենն ասում է. «Ես հա՛մ մրսում եմ, հա՛մ էլ սառել եմ»։

Երբ Սուրիկն ասում է. «Ես կարկանդակ ու խնձոր եմ ուզում», Կարենն ասում է. «Ես կարկանդակ էլ եմ ուզում, խնձո՛ր էլ, տա՛նձ էլ»։

Երբ Սուրիկն ասում է. «Ես շան պես քաղցած եմ», Կարենն ասում է. «Ես շա՛ն պես էլ եմ քաղցած, կատվի՛ պես էլ»։



# Փոքրիկ ձկնորսը

Կարենը մի անգամ հայրիկի հետ գնաց ձուկ որսալու։ Նրանք ձկան համար մի մեծ դույլ էին հետները վերցրել։ Երբ հասան գետափ, նստեցին մի մեծ ծառի տակ ու սկսեցին ձուկ որսալ։ Նրանք սկզբում նստել էին հանգիստ ու անշարժ, բայց շուտով Կարենը հոգնեց ու սկսեց երգել. «Ձկնի՛կ, ձկնի՛կ, ինձ մո՛տ արի...»

— Սո՛ւս արա, — ասաց հայրիկը, — նըստի՛ր հանգիստ ու մի՛ երգիր, տեսնում ես, որ ձկները խրտնում են։

Կարենը լսեց ու աշխատեց անշարժ մնալ, բայց շուտով քունը տարավ ու քնեց։

Հայրիկն սկսեց մեկը մյուսի հետևից ձուկ բռնել ու գցել դույլի մեջ։

Կարենն էլ երազո՛ւմ իրար հետևից ձկներ էր բռնում ու գցում դույլի մեջ։ Երբ նա արթնացավ, տեսավ, որ դույլը լիքն է ձկնով, շատ ուրախացավ։

— Սրանք իմ բռնած ձկներն են, չէ՞, հայրի՛կ։

— Դե իհա՛րկե, քո բռնած ձկներն են, — ասաց հայրիկը։

Երբ նրանք տուն վերադարձան, Կարենը մոտ վազեց պարտեզում աշխատող մայրիկին ու հպարտությամբ ցույց տալով դույլի միջի ձկները՝ ասաց.

— Տե՛ս, մայրի՛կ, այս բոլոր ձկները ես եմ բռնել։

*Անգլերենից փոխադրեց՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*





# ԵՐԻՑՈՒԿՆ ԱՆԻԿԻ ՀԱՄԱՐ Է

ՌՈԲԵՐՏ ԲԱԲԼՈՅԱՆ

Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Անձրև եկավ, և մեր խաղն ընդհատվեց: Թաքնվեցինք ով որտեղ կարող էր և սպասեցինք արևին: Բայց անձրևը չէր դադարում և չէր հայտնվում արևը: Մենք՝ տղաները, հանեցինք մեր կոշիկները և երեսնիվայր դրինք արևմտյան աստիճաններին: Իսկ աղջիկները բակում վազելով սկսեցին հողի վրա խաչեր նկարել, հետո ձեռք-ձեռքի տված երգեցին.

«Ա՜խ, դադարիր, անձրև՜ ջան,
Ես կգնամ Արեստան»:

Թեկուզ չգիտեինք այդ խոսքերի ո՛չ պատմությունը և ո՛չ էլ նշանակությունը, այնուամենայնիվ հավատում էինք նրանց օգնությանը: Անձրևը չդադարեց, և մենք էլ փախանք մեր տները:

Երեկոյան մայրիկն ինձ ուղարկեց Վարդուհի մորաքրոջ մոտ՝ լվացքի պարանը բերելու: Հենց մեր շեմքի վրա հանդիպեցի Վարդուհի մորաքրոջ աղջկան՝ Անիկին:

— Ի՞նչ է, անձրևը վերջացա՞վ,— հարցրի:

— Վաղու՜-ու՜ց,— ասաց Անիկը: — Ես քեզ պատուհանից կանչեցի, ասացին՝ քնած ես:

— Իսկ ի՞նչ է պատահել,— ուրախացա ես,— քեզ նոր խաղալի՞ք են նվիրել:

— Չէ՛, հենց այնպես, ուզում էի միասին գետափ գնանք, քար նետենք գետը:

— Ի՞նչ կա որ, հենց հիմա գնանք:

Եվ մենք գնացինք: Մեր տունը բլրի վրա է, իսկ գետը հոսում է վարում: Մի քիչ ման եկանք, տափակ քարեր հավաքեցինք և նստեցինք:

Շատ լավ է վերևից քարեր նետել ջրի մեջ: Քլո՛փ-քլո՛փ, և ջրի վրա օղակներ են գոյանում:

— Ինչ ես կարծում, որքա՞ն կլինի գետի խորությունը այստեղ,— հարցրեց Անիկը:

— Ի՞նչ կա մտածելու, խորությունը խորություն է, քեռի Սիմոնն ասում է, որ գետն այնքան խոր չի, բայց օձեր կան նրա մեջ:

— Օ՜, նայի՛ր, ի՜նչ գեղեցիկ երիցուկներ կան ներքևում,— ճչաց Անիկը: — Ես վաղը կքաղեմ մի ամբողջ փունջ:

— Ինձ համար քաղիր թեկուզ մեկը, բայց այսօր:

— Այսօր չեմ կարող: Հասկանու՞մ ես, հիմա հարկավոր է գնալ քո մայրիկի մոտ՝ լվացքի պարանը վերցնելու. իսկ հետո...

— Ինչու՞ հետո,— ընդհատեց Անիկը,— ես գնամ պարանի հետևից, իսկ դու այդ ժամանակ ինձ համար քաղիր, ա՛յ, այն ծաղիկը: — Եվ նա ցույց տվեց զառիթափի վրա բուսած գեղեցիկ երիցուկը:

— Լավ, գնա՛:

Թվում էր, նստած տեղից ձեռքս կհասնի երիցուկին: Բայց դժվար էր մոտենալ նրան: Զառիթափ էր, լպրծուն... Իսկ ներքևում գետն էր՝ լիքը օձերով:

«Բայց չի կարելի մերժել աղջկա խնդիրքը,— մտածեցի ես,— կպատմի տղաներին»: Մտածեցի և սկսեցի զգուշորեն սողալ ցած, դեպի ծաղիկը: Հանկարծ ոտքս սայթաքեց, ես սեղմվեցի հողին և ամուր բռնեցի ծաղկի ցողունը: Թվաց, թե ուր որ է կպոկվեմ այդտեղից և քարի պես կթըռչեմ ներքև, այն գետի մեջ, որն այնքան էլ խոր չէ, բայց որի մեջ շատ օձեր կան:

— Այստե՛ղ եկեք, այստե՛ղ,— հանկարծ լսում եմ Անիկի ձայնը վերևից,— Օնիկը գետն է ընկել, այստե՛-ե՛ղ...

Պարանն իջեցրին: Բայց ես չկարողացա բռնել նրա ծայրը, որովհետև եթե մի թեթև շարժվեի, քարի պես կթռչեի ներքև... Հանկարծ զգում եմ, որ մեկն իմ ձեռքից բռնած՝ քաշում է վերև:

... Երբ մայրիկս հարցրեց, թե ինչու եմ իջել այդքան ներքև, բռունցքս բացեցի և ցույց տվեցի հրաշքով անվթար մնացած երիցուկը:

— Քո ինչի՞ն էր պետք դա,— հարցրեց մայրիկը:

— Երիցուկն Անիկի համար է...

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Շնչավոր չի,
Թևավոր չի,
Բայց բոլորից
Վեր կթռչի
Եվ աստղերի
Մեջ կշրջի:

Թեև բույս է, ունի ցողուն,
Բայց չի աճում ոչ մի հողում,
Խիստ դիմացկուն՝ ցուրտ ու տաքին,
Կանաչ զգեստ միշտ իր հագին:

Անուն ունի թռչունի,
Թև ունի, փետուր չունի,
Ինքը հայտնի շինարար,
Աշխատում է անդադար,
Մեկ համար տուն կառուցում,
Բույն չի շինում իր համար:

Ի՞նչն է տաքացնում
Մարմինդ սառած,
Քան թե յոթ խարույկ
Միասին վառած:

Հողի ծոցում
Բաց տակառ,
Մեջը՝ լեցուն
Ջուր ու շաքար:

ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ

Ինքը անշունչ, փոքրիկ մի բառ,
Ամեն լեզվով՝ ունի հինգ տառ,
Իր կատարած հրաշքներով
Զարմացնում է արար-աշխարհ:

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Պատասխանները՝ տիեզերանավ, քիմիա, վերամբարձ կռունկ, մամուռ, հագուստ, ճակնդեղ:

Տրվում է անվճար՝ «Պիոների» 6-րդ համարի հետ։

# ՀԱՆԳՍՏԻ ՊԱՀԻՆ



Կաղամբի թփերի մեջ քանի՞ ճագար է թաքնվել։

ԱՌԱՆՑ ԽՈՍՔԻ

*Ստուգեք ձեր դիտողականությունը*

# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

տակ իրենց բանաստեղծական ներշնչանքն են ստացել ոչ միայն Ավետիք Իսահակյանը, այլև շատ ուրիշ գրողներ։

Հովհաննես Հովհաննիսյանը ծնվել է 1864 թվականի ապրիլի 26-ին Էջմիածնում, չքավոր գյուղացու ընտանիքում։

Փոքր էր Հովհաննեսը, հազիվ 5—6 տարեկան, երբ հայրը նրա համար կարդում էր Ղ. Աղայանի «Արություն և Մանվելը»։ Իսկ շատ հաճախ, իրենց տանը, ձեթի ճրագի աղոտ լույսի տակ նըստած, փոքրիկ Հովհաննեսը լսում էր իր զուսան հորեղբոր պատմած գյուղական հինավուրց զրույցներ, հրաշապատում հեքիաթներ, հերոսական ավանդություններ և իրական շատ պատմություններ։

Սկզբնական կրթությունն ստանալով Էջմիածնում ու Երևանում, 1877 թվականին պատանի Հովհաննեսը մեկնում է Մոսկվա և ընդունվում Լազարյան ճեմարանը։ Այստեղ նա աշակերտում է անվանի բանաստեղծ Սմբատ Շահազիզին և հենց նրա անմիջական ազդեցությամբ գրում բանաստեղծական իր առաջին թոթովանքները։ Ճեմարանականները հաճախ իրենց պատի թերթերում կարդում են Հովհաննեսի բանաստեղծությունները։

Սակայն նա միջոցներ չուներ գիրք հրատարակելու. երիտասարդ բանաստեղծը գրում է, բայց ժողովուրդը չի լսում նրա ձայնը, չի կարդում նրա ոգեշունչ տողերը։ Եվ ահա, Հովհաննեսի ընկերները իրենց հավաքած գումարներով 1887 թվականին Մոսկվայում հրատարակում են նրա երկերի առաջին ժողովածուն։ Գիրքը մեծ հաջողություն է ունենում։ Դա ոգևորում է բանաստեղծին և ավելի սրտաբուխ դարձնում նրա քնարը։ Նա որոշում է ընդմիշտ նվիրվել աշխատավոր ժողովրդին, երգել նրա հույզերն ու ապրումները։

Աղքատություն ես սիրեցի,
Խեղճի լացը, հառաչանք,
Ես քնարս նվիրեցի
Միշտ երգելու և տանջանք։

Մոսկվայի համալսարանն ավարտելուց հետո (1888 թ.) Հովհաննիսյանին առաջարկում են մնալ համալսարանում և հայոց լեզու դասավանդել։ Սակայն հայրենիքի կարոտը նրան բերում է Հայաստան։ Երկար տարիներ նա հայոց լեզու է դասավանդում Էջմիածնի Գևորգյան ճեմարանում։ Աշակերտները շատ են սիրում իրենց ուսուցչին և գերազանց սովորում մայրենի լեզուն։

Հայկական արյունալի ջարդերի օրերին բանաստեղծը անհունորեն վշտանում է իր ժողովրդի ծանր կացության համար, արտահայտում իր սերն ու հպարտությունը։ Հայաստանի և նրա պատմական անցյալի նկատմամբ։ Բազմիցս օգտագործելով հայկական ժողովրդական երգերն ու ասացվածքները, նա գրում է շատ պարզ, պատկերավոր և խիստ արտահայտիչ։ Հովհաննիսյանը երազում է, որ բոլոր մարդիկ ապրեն ազատ ու երջանիկ։

Բանաստեղծը կյանքում շատ դառնություններ է տեսել, երբեմն էլ՝ հուսահատվել, բայց երբեք չի հաշտվել տիրող անարդարության հետ, միշտ պայքարել է այն ամենի դեմ, ինչ խոչընդոտ է հանդիսացել ժողովրդի երջանկության համար։ Հովհաննիսյանը լավ տիրապետել է ոչ միայն հայերենին և ռուսերենին, այլև գիտեր մի քանի օտար լեզու։ Նա մեծ վարպետությամբ թարգմանել է Պուշկինի, Լերմոնտովի, Գյոթեի, Հայնեի և ուրիշների գործերից։

Հովհաննես Հովհաննիսյանի ստեղծագործությունները, որ համակված են ժողովրդայնությամբ, երբեք չեն մոռացվի սերունդների կողմից։

Լրացավ ժողովրդի երգչի ծննդյան 100-ամյակը։

*ԿԱՏՅԱ ՍԱՐՎԱԶՅԱՆ*



ինդեք 7780

20 կ.





ԾԱՂԻԿՆԵՐ
ՍԱՐՎԱԶՅԱՆ ՄԻՇԱ
(Երևան, 4 տ.)

ՏՈՆ ՕՐ
ԲԱՂՐԱՄՅԱՆ ՆԱԻՐԱ
(Երևան, 4 տ.)



ԲՆԱՆԿԱՐ
ՊՈՂՈՍՅԱՆ ՍԵՐՎԵՆՏ
(Երևան, Չարենցի դպ. աշ.



ԴԱՇՏԻ ԾԱՂԻԿՆԵՐ
ՆԱՆՈՒՇՅԱՆ ԱՐՓԻԿ
(Երևան, 4 տ.)